բառամիջին՝ այս բառերուն մէջ՝ "ախտորք, մախս, խանխար, խրխում." եւ ասորի "Բրխիշյ" անուան մէջ (Ղազ. Փարպ. էջ 72. ասորին է brīχīšō ʿ). իսկ ն կը գտնենք "նասնարայ, նարնեհան, նարմիր, նուպր[1], մաշն" եւ այլ քանի մը բառերու մէջ, որոնք անշուշտ ասորերէնէ չեն յառաջ եկած։ Ասոր. ܠ = l, որ Հայերէն ղ պիտի գրուէր, զարտուղութեամբ[2] երբեմն ւ կը տառադարձուի "լումայ, խարագուլ, խարբալ" եւ "տարմաւ" բառերուն մէջ, (թէեւ կայ նաեւ "տարմաղակ։") Ասորերէն ܦ = f = ֆ կամ — կամ պ ի "կուպր" եւ "շպար." — ասոր. ܨ ṣ = Հայ ծ[3], բայց ṣṣ լոկ ց, ինչպէս "կացին" = աս. ḥaṣṣīnā եւ "ցից" = ասոր. ṣeṣṣā եւ անկանոնութեամբ նաեւ ծ այս բառին մէջ՝ "ծրծուր." ասոր. ܩ = q կ'ըլլայ Հայերէն կ, բայց qq՝ Հայերէն խ, ինչպէս "կախաւ" = աս. qaqqẹwānā. Ասորերէն ẹ ձայնաւորին Հայերէնի մէջ — ըլլալուն իբր օրինակ յիշենք "—դին, գ—դիշ, գղ—թ, կասկ—րայ, հ—շիւ, մ—գաղ—թ, մ—խաթ, շաբ—թ, շ—ւիղ, քանք—ր." իսկ ուրիշ տեղեր ե կը դառնայ կամ բոլորովին դուրս կ'իյնայ։ Զարմանալի է որ ասորերէն e = սկզբնա-

---

[1] "Կարկեհան" եւ "կարմիր" բառերն հաւանականաբար պարսկերէնէ առնուած են. իսկ "կուպր" բառին մէջ զարմանալի է պ տառը փոխ՝ ֆ կամ —։

[2] Ի հարկէ տպագրութեանց մէջ հին ձեռագրաց ղ տառին տեղ ւ կը տեսնուի շատ անգամ։

[3] Բաց ի այս բառերէն՝ Հմմտ. Ծբաւոթ = ասոր. צבאות ի Wiener Zeitschr. IV, էջ 183. — Բորբեծոն (Եփրեմ, տպ. Վենետ. 1836. Գ. էջ 117) = ասոր. ברדיצן — Մծբին = ասոր. Nesīwīn.

կան iՙ Հայերէն "ցից" = աս. ṣeṣṣā[1] բառին մէջ է եղած է։ Եթէ միտ դնենք Հայերէնի կանոնին՝ որուն համեմատ է եւ ու— երբ վերջին վանկի մէջ չեն, դուրս կ'իյնան, կրնանք այն ատեն նաեւ գզաթ բառն հնագոյն *գէզաթ ձեւին վերածել, եւ ծնծղայ ի * ծէնծղայ. որոնց դէմ ծանօթ ասորերէն gezzeϑā եւ ṣeṣṣelā բառերն լեզուի նորագոյն շրջան մը կը ներկայացընեն։ Բայց պէ՞տք է արդեօք արդեամբք ընդունիլ՝ թէ այս Հայերէն բառերն ասորերէն նախաձեւերէն (— Հայ. գզաթ = գէզաթ = նախասորերէն gizzat եւն —) յառաջ եկած են։ Ասոր չեմ կրնար ինք զինքս որոշել։ Միտ դրուի թէ ձայնաւորի ինչ մեծ կորուստ եղած է շղթայ բառին մէջ. (= աս. šēšaltā), եւ ձայնաւորաց մէջ եղած ուրիշ անկանոնութիւնք։

Ձայնափոխութեան ուրիշ մէկ յատկութեան վրայ ալ հոս պէտք է խօսիլ։ Մէկ կողմանէ ասորի կրկին բաղաձայնք Հայերէնի մէջ պարզ բաղաձայն եղած են, — վասն զի՝ ինչպէս վերն յիշեցինք, Հայերէն լեզուն բաղաձայնի կրկնութիւն ընդհանրապէս չի ճանչնար, ուստի ըստ այսմ ասորերէն bb = Հայերէն բ, ասոր. pp = Հայ. փ, դ. ասոր. qq = ք, ասոր. ṭṭ = թ, ասոր. zz = զ (գզաթ), ասոր. ṣṣ = ց (կացին, ցից), ասոր. ll = ղ, ասոր. nn = ն եղած է. — միւս կողմանէ վեց բառերու մէջ ասորերէն կրկին բաղաձայնք եղած են ն + պարզ

[1] Ասորերէն մէջ ĕ եւ ĭի մէջ տարբերութիւն չկայ։ Նէօլտէքէ։ (Ծանօթութեան թարգմանութեան ժամանակէ։)

# ԱԶԴ

Յաջորդ գրութիւնս թարգմանութիւն է մեծանուն հայագէտ Հիւպշմանի կարեւոր մէկ քննութեան. (**H. Hübschmann,** Die semitischen Lehrwörter im **Altarmenischen: ZDMG,** XLVI, **1892,** pp. **226—268**). Թարգմանութիւնս ամբողջական է: Հայերէն բառերուն եւրոպական տառերով դրուած ընթերցմունք ի հարկէ դուրս կը մնան, ինչպէս նաեւ հայերէն բառերու դիմաց դրուած նշանակութիւնքը՝ միայն ուր պէտք երեւցաւ՝ պահուեցան: — Բայց ուր որ (եբրայական տառերով գրուած) ասորերէն բառերէն ետքը եւրոպական գրերով (— ըստ նորագոյն դրութեան գիտնոց —) դրուած էին այն բառերուն ընթերցմունք, անփոփոխ պահեցինք. վասն զի հայերէն տառերն՝ ըստ արեւմտեան եւ արեւելեան գաւառաբարբառներու՝ այլեւայլ կերպով հնչուելով՝ ամէն ընթերցողի համար միեւնոյն հնչումը չունին. բաց աստի նոյն լեզուի հնչմունքն ոչ միշտ ճշգրիտ կրնան ներկայացընել: Մեր կողմանէ աստ անդ դիտողութիւն յաւելուլ՝ թէեւ տեղ տեղ կարելի էր՝ կարեւոր չհամարեցանք. միայն հայերէն բառերու հետ համեմատուած յունարէն եւ այլ բառերու նշանակութիւնքն աւելցուցինք, ուր հեղինակը չէ դրած, եւ ուր կարեւոր երեւցաւ:

Հ. Յ. Տ.

# ՍԵՄԱԿԱՆ· ՓՈԽԱՌԵԱԼ ԲԱՌԵՐ

## ՀԻՆ ՀԱՅԵՐԷՆԻ ՄԷՋ

Մեր յաջորդ գրութեան նպատակն է Հին Հայերէնի մէջ սեմական փոխառեալ բառերու ամբողջ մթերքը նորէն քննել, ըստ ծագման նոյն բառերուն՝ երկու ճիւղի (ասորերէն եւ արաբերէն) անջատել, եւ հետազօտել անոնց ձայնական յատկութիւնները: Բառերն երկու դասակարգի բաժնելու ատեն շատ մը բառեր դժուարութիւն կը յարուցանեն, այսինքն անոնք՝ որ թէեւ ասորերէնի եւ արաբերէնի մէջ կը գտնուին, բայց այս լեզուաց բնիկ չեն, այլ փոխառութիւն են կամ այնպէս կ'երեւայ թէ ըլլան, եւ չենք գիտեր թէ ուստի՛ ծագած են անոնք, եւ ի՛նչ ճամբով — ասորերէնի եւ արաբերէնի միջնորդութեա՞մբ թէ ոչ — Հայոց հասած: Այստեղ շատ դիպաց համար ամենէն հաւանականն է ընդունիլ՝ թէ պարսկերէնէ առնուած են ասոնք կամ պարսկերէնէ անցած են. վասն զի ծանօթ է որ թէ Հայք եւ թէ Արամայեցիք ու Արաբացիք շատ բառեր փոխ առած են պարսկերէնէ: Քանի մը հին բառերու նկատմամբ կրնայ տարակուսական ըլլալ թէ ուղղակի՛ յունարէնէ առած են Հայք՝ թէ Ասորւոց միջնորդութեամբ, (— այս դէպքիս մէջ ասորերէնէ

փոխառեալ կը համարուին, —) եւ քանի մը նոր բառերու նկատմամբ կրնայ խնդիր յառնել թէ ուղղակի՞ արաբերէնէ առնուած են հայերէնի մէջ թէ արաբացեալ նոր-պարսկերէնի (եւ յետոյ՝ տաճկերէնի) միջնորդութեամբ։ Ես այս վերջին տեսակները արաբերէնէ փոխառեալ բառերու կարգին մէջ դրած եմ ուր որ ստոյգ էր արաբական ծագումը, նոյնպէս նաեւ քանի մ'օտար բառեր՝ որ արաբերէնի ձեւով հայերէնի մէջ՝ մտած են։ Քանի մը բառերու վրայ ալ յետոյ կրկին պիտի խօսինք, երբ պարսկերէնէ եւ յունարէնէ առնուած փոխառութեանց վրայ ճառենք։

Այս նիւթոյս վրայ ճառող մատենագրութիւնն մինչեւ 1877 ի մի հաւաքած է Լակարտ իւր "Հայկական Ուսումնասիրութիւնք" գործոյն մէջ ի Կէօթթինկէն 1877[1]։ Ասոր վրայ յաւելլու է իմ "Հայկականք" Բ եւ Գ[2] եւ Պատկանեանի՝ Նիւթք հայերէն բառարանի Ա եւ Բ, ի Պետրբ. 1882 եւ 1884 (ռուսերէն։)[3]

Գործոյս արամէական մասն աչքէ անցու-

---

[1] De Lagarde, Armenische Studien, Göttingen 1877։ Հմմտ. նաեւ նոյն հեղինակին "Ժողովածոյ գրութիւնք" (Gesammelte Abhandlungen, Leipzig 1866), ի մասնաւորի էջ 1 եւն՝ "Պարսկերէն, հայերէն եւ հնդկերէն բառեր ասորերէնի մէջ", Հոս մասնաւորապէս մատնանիշ կ'ընեմ այս երկու գործքերն, որպէս զի կրկին ու կրկին կոչումն ընել չի տախպուիմ։

[2] H. Hübschmann, Armeniaca II: ZDMG XXXV, pp. 654—664 եւ Armeniaca III: XXXVI, pp. 115—184։

[3] Այս տեղ կը գտնենք հայերէն նաֆտար, խաբ, կատափ, հէսար, սանչար, սուշարայ եւ այլն բառերն իրենց համապատասխանող արաբական բառերու հետ համեմատուած։

ցած է Նէօլտէքէ (Nöldecke): Ուր որ այս նկատմամբ հնոց աւանդածէն տարբեր կը դնեմ՝ իւր ճոխութեան վրայ յեցեալ է: Ասորեստանեայ լեզուի նկատմամբ եղած տեղեկութիւնք հաղորդած է ինձի Տր. Ենսէն (Jensen):

---

## Ա.

## ՍԵՄԱԿԱՆ ՓՈԽԱՌԵԱԼ ԲԱՌԵՐ

Հայք երկայն ժամանակ Արամայեցւոց դրացի էին արդէն (Հմմտ. Kiepert, Alte Geogr. Քիբերդ, Հին աշխարհագրութիւն, էջ 79) երբ չորրորդ դարու մէջ քրիստոնէութիւն ընդունելով աւելի մերձաւոր յարաբերութեան մէջ մտան Ասորւոց ինչպէս նաեւ Յունաց հետ: Ուսումնատենչ եւ եռանդուն հայ եկեղեցականք ասորի եւ յոյն ուսումնարանները (Եդեսիա եւն) կը յաճախէին սորվելու[1]. Ասորիք եւ Յոյնք կու գային ի Հայս եւ քրիստոնէութիւն կը քարոզէին, եւ բազմաթիւ գործքեր հինգերորդ դարէն մինչեւ ցերեքտասաներորդ դար թարգմանուեցան ասորերէնէ[2] եւ յունարէնէ ի հայերէն: Ուստի Ասորւոց Հայոց վրայ ըրած այս ազդեցութեան հետեւութեամբ շատ մը ասորի բառեր հայերէնի մէջ մտած են, եւ այն՝ թէ այն-

---

[1] Հմմտ. Կորիւն, Պատմութիւն վարուց Մաշթոցի (կամ Մեսրոպայ:)

[2] Ասորերէնէ թարգմանուած են Ե դարէն օրինակի համար Եփրեմայ գործքերը, Եւսեբիոսի Եկեղեցական Պատմութիւնը, Թուղթ Աբգարու (տես Տաշեան՝ ի Wiener Zeitschrift, 4. p. 17 ff.) եւն. ԺԳ դարէն՝ Միքայէլ Ասորի:

պիսի բառեր որ սովորական լեզուին կը վերաբերին, եւ թէ նաեւ այլք՝ որ միայն գիտնական գրոց-լեզուին են[1]:

Տարակոյս չկայ որ արամէական այն բարբառն՝ որմէ Հայք այն բառերն առին, բուն ասորերէնն է, այսինքն՝ Եդեսիայի եւ ասորի գրականութեան լեզուն: Այս փոխառութեանց ժամանակին նկատմամբ գիտենք որ այն բառերուն մեծագոյն մասն, որովհետեւ Հայերէն ամենահին գրութեանց մէջ կը գործածուին, արդէն հինգերորդ դարու եւ աւելի եւս կանուխ ժամանակաւ անցած են Հայերէնի մէջ. այնպէս որ միայն սակաւաթիւ բառեր՝ որ յետոյ գործածուած կը գտնենք[2] կարելի է որ յետոյ փոխառեալ ըլլան:

Իսկ փոխառեալ բառերու ձեւին նկատմամբ նկատելի է որ ոմանք -այ վերջաւորութիւն մ'ունին՝ որ ասորերէնի սաստկական ձեւին (status emphaticus)-ā վերջաւորութեան կը համապատասխանէ[3], եւ ոմանք չունին. ուստի խնդիր

---

[1] Այսպիսի են ոդէն (Եդեն), ոնոմոնոյթ (Նշանագիրք), Թորգմոնութա, Թոշլէշ. Բոհիոռոհ, թոթոր (կարկանդակ), անշուշտ նաեւ՝ գոդէշ (շեղջ). գդոմ (գեղմն), խոսրք (սուր), կոբկոբոյ (նաւ), շոշչոյ (մարմնական ի սպասու պատարագի), շոթոյ (աչքի օծանելիք): Ինչ ինչ բառերու նկատմամբ դժուար է որոշել:

[2] Այսպէս՝ թոմոր (Thymus, ԺԳ դարէ), մոնէշոմ (ԺԲ դար.) շոշմոյ (ԺԱ դար.) թոշնոյ (ԺԳ դար.) գորբոյ (անշուշտ ոչ ԺԲ դարէ յառաջ), փորմոլ (քսակ. Ը դարէն ետքը), շոթոյ (Ը դարէն ետքը), շոշչոյ (ԺԴ դար.), շոջոյ (ԺԲ դար), մոխոմ (Հերիւն, ի Վարս Հարանց ?. ապա թէ ոչ՝ ԺԲ դար):

[3] Հայերէնի մէջ -ոյ վերջաւորութիւնն արդէն կանուխ ժամանակաւ պարզ ո հնչիւնն առած էր, այնպէս որ յետագայ Հայերէնին մէջ ոյ վերջաւորութիւնն ո ձայնի

է թէ արդեօք ասորական բառերուն կէսը սաստական ձեւով (-ā վերջաւորութեամբ) եւ միւս կէսն բացարձակ ձեւով (առանց -ā վերջաւորութեան) փոխառեալ են։ Պէտք է Նէօլտէքէի հետ ընդունիլ որ եթէ ոչ բոլոր՝ գոնէ գրեթէ բոլոր այս փոխառեալ բառերու հիմն է ասորերէն բառերու սաստկական ձեւը։ Բուն ասորերէնին մէջ այս ժամանակ՝ որ հոս նկատողութեան կրնայ առնուիլ, այսինքն՝ որչափ ամենականուխ ժամանակներն որ ասորի մատենագրութիւնը կը հասնի, արդէն գտականք այս -ā վերջաւորութեան հետ այնպէս խառնուած կցուած էին, որ այս կը համարէր բառին գլխաւոր ձեւը, որուն բուն նշանակութիւնը այլ եւս չէր զգացուեր. այնպէս որ այս -ā վերջաւորութիւնը պէտք չէ այլ եւս իբրեւ յօդ ընդունել, ինչպէս էր բուն նախնաբար եւ ինչպէս տակաւին էրնոյն ժամանակ ուրիշ բարբառներու մէջ։ Արդ երբ այս բառերն Հայերէնի մէջ մտան, -ā վերջաւորութիւնը կամ մնաց նոյնպէս, կամ պարզապէս դուրս ձգուեցաւ[1]։ Թէ Հայերէն այն բառերը որ առանց -ā վերջաւորութեան են, ասորերէնի բացարձակ ձեւէն (status absolutus)՝ որ շատ բառերու մէջ եւ ոչ կը գործածուէր, յառաջ եկած չեն, կը ցուցընէ ի միջի այլոց -ūϑā եւ -e̥ϑā վերջաւորած բառերուն առած ձեւն. (Հմմտ. Հայերէն գաղղ–ն

---

տեղ՝ լոկ տառադրական գործածութիւն մըն է։ Ուրիշ տեղ պիտի խօսիմ Հայերէն -այ ձայնին փոխ առոր. -ā եւ յունարէն aι նախնական նշանակութեան վրայ։

[1] Ինչպէս նաեւ նոր-պարսկերէնը։ Տես Nöldecke, Pers. Stud. II, 35։

= ասոր. gālūϑa[1]), որոնք բացարձակ ձեւին մէջ միայն -ū կամ -ā կը վերջաւորին. (այսպէս ասոր. gālū). իսկ ասորերէն բաղադրեալ կոչուած ձեւը (status constructus, որ -ūϑ կը վերջաւորի, այսպէս gālūϑ) իբրեւ հին նկատել հայերէն այս փոխառութեանց անհնար է բոլորովին[2]։ Այս խնդրոյս մէջ կարեւոր նշանակութիւն չունի ձայնաւորը. վասն զի կամայական է, եւ մասամբ սաստկական ձեւին (հմմտ. խարբ = ասոր. ḥarbā, բացարձակ ձեւը ḥẹrew. մախս = ասոր. maχsā, բացարձակ ձեւը՝ meɣes), մասամբ բացարձակ ձեւին (տերեփ = ասոր. ṭẹref, սաստկական ձեւն է՝ ṭarpā) համեմատ է։ Բայց աստի ի հարկէ պէտք է նաեւ զիջանիլ որ քանի մը շատ հին ժամանակ փոխառեալ բառեր ասորերէնի բացարձակ ձեւին կրնանք կամ պէտք ենք վերագրել. ինչպէս օրինակի համար այժմ իսկ յիշուած տերեփ բառը, որ աւելի նման է ṭẹref բացարձակ ձեւին քան ṭarpā սաստկականին։

Ի մասնականին սովորաբար փոխառեալ բառերու մէջ այս տառերը կամ ձայներն իրարու կը համապատասխանեն։

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| Ասոր. | ב | ג | ד | ה | ו | ח |
| Հայ. | բ b | գ g | դ d | հ h | զ z | խ χ |

[1] Դարձեալ՝ խանութ — hānūϑā.

[2] Հմմտ. նաեւ գզաթ — ասոր. gezzeϑā, որուն բացարձակ ձեւն է gezzā. շաբաթ — ասոր. šabbeϑā, որուն բացարձակ ձեւն šabbā. ուրբաթ — ասոր. ʿerūweϑā, որուն բացարձակն է erūwā. մագաղաթ — ասոր. meγalleϑā, որուն բացարձակ ձեւն է meγallā. շղթայ — ասոր. šēšaltā, որուն բացարձակն է իբր šēšlā.

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| Ասոր. | ט | י | כ (սկիզբը) | ל | מ | נ |
| Հայ. | տ t | յ y | ք kʿ | ղ λ | մ m | ն n |
| Ասոր. | ס | פ | צ | ק | ר | שׁ |
| Հայ. | ս s | պ p, փ pʿ | ծ c(=ts) | կ k | ր r | շ š |
| Ասոր. | ת | ā | ī | ū | ō | e |
| Հայ. | թ tʿ | ա | ի | ու | ո, ու | աչամ— |

Պէտք է միտ դնել որ Հայերէն ոչ կրկին բաղաձայն եւ ոչ w, γ, δ, f, ϑ թաւերն ունի, ուստի եւ ասորերէնին bb եւ w = բ է. ասորերէն γ = գ. ասոր. δ = դ. ասոր. pp եւ f = ֆ. ասոր. ϑ = թ են: Ասոնցմէ դուրս — ի բաց առեալ փոխառութեանց սովորական քանի մ'անկանոնութիւնքը, հետեւեալ զարտուղութիւնք կը գտնուին կանոնաւոր ձայնական ճշդութենէն:

Հնչական հագագաւոր ב = w ձայնի դիմաց կիսաձայն ւ կը գործածուի՝ փոխ հնչական պայթուցիկ (son explosif) բ տառին. օրինակի համար՝ “կաքաւ, հաշիւ, շաւիղ, սուին, քաւշ:„ Ասոր հետ կը միաբանի նաեւ այն որ երկու անգամ անհնչական հագագաւոր פ = f տառին տեղ նոյնպէս ւ գրուած է՝ փոխանակ անհնչական ֆ թաւին, օրինակի համար՝ “կեղեւ, տերեւ:„ Ասորի ח = ḥ տառին դիմաց բաց ի կանոնաւոր խ տառէն՝ կը գտնենք երբեմն հ, ինչպէս “հաշիւ.„ կամ՝ կ, ինչպէս՝ “կացին.„ եւ կամ՝ ք, ինչպէս՝ “քաքար:„ Ասորի ט = ṭ տառին դիմաց կը դրուի տ, բայց անգամ մը ṭṭ տառերու տեղ թ գրուած է այս բառին մէջ՝ “մախաթ„ = ասր. meḥaṭṭā. Ասորի כ = k տառին դիմաց բառասկզբան կանոնաւորապէս ք կը գտնենք, եւ նաեւ

բառամիջին՝ այս բառերուն մէջ՝ «աքսորք, մաքս, քանքար, քրքում.» եւ ասորի «Բրքիշոյ» անուան մէջ (Ղազ. Փարպ. էջ 72. ասորին է brīχīšōʿ). իսկ կ կը գտնենք «կասկարայ, կարկեհան, կարմիր, կուպր[1], մաշկ» եւ այլ քանի մը բառերու մէջ, որոնք անշուշտ ասորերէնէ չեն յառաջ եկած: Ասոր. ܠ = l, որ հայերէն ղ պիտի գրուէր, զարտուղութեամբ[2] երբեմն լ կը տառադարձուի «լումայ, խարագուլ, խարբալ» եւ «տարմալ» բառերուն մէջ, (թէեւ կայ նաեւ «տարմաղիկ»:) Ասորերէն ܦ = f = ֆ կամ — կամ պ ի «կուպր» եւ «շպար». — ասոր. ܨ ṣ = հայ ծ[3], բայց ṣṣ լոկ ց, ինչպէս «կացին» = աս. ḥaṣṣīnā եւ «ցից» = ասոր. ṣeṣṣā եւ անկանոնութեամբ նաեւ Ն այս բառին մէջ՝ «Նրնուր.» ասոր. ܩ̣ = q կ'ըլլայ հայերէն կ, բայց qq՝ հայերէն ք, ինչպէս «կաքաւ» = աս. qaqqe̥wānā. Ասորերէն e̥ ձայնաւորին հայերէնի մէջ ա ըլլալուն իբր օրինակ յիշենք «ադին, գադիշ, գղաթ, կասկարայ, հաշիւ, մագաղաթ, մախաթ, շաբաթ, շաւիղ, քանքար.» իսկ ուրիշ տեղեր ե կը դառնայ կամ բոլորովին դուրս կ'իյնայ: Զարմանալի է որ ասորերէն e = սկզբնա-

---

[1] «Կարկեհան» եւ «կարմիր» բառերն հաւանականաբար պարսկերէնէ առնուած են. իսկ «կուպր» բառին մէջ զարմանալի է պ տառը փխկ՝ ֆ կամ —:

[2] Ի Հարկէ տպագրութեանց մէջ հին ձեռագրաց ղ տառին տեղ լ կը տեսնուի շատ անգամ:

[3] Բաց ի այս բառերէն՝ հմմտ. Ծբաւոթ = ասոր. צבאות ի Wiener Zeitschr. IV, էջ 183. — Բարդէծան (Եփրեմ, տպ. Վենետ. 1836. Գ. էջ 117) = ասոր. ברדיצן — Մծբին = ասոր. Neṣīwīn.

կան ï՝ Հայերէն "ցից" = աս. ṣeṣṣā[1] բառին մէջ է եղած է։ Եթէ միտ դնենք Հայերէնի կանոնին՝ որուն համեմատ ի եւ ու— երբ վերջին վանկի մէջ չեն, դուրս կ՚իյնան, կրնանք այն ատեն նաեւ գզաթ բառն հնագոյն *գիզաթ ձեւին վերածել, եւ ծնծղայ ի * ծինծղայ. որոնց դէմ ծանօթ ասորերէն gezzeϑā եւ ṣeṣṣelā բառերն լեզուի նորագոյն շրջան մը կը ներկայացնեն։ Բայց պէ՞տք է արդեօք արդեամբք ընդունիլ՝ թէ այս Հայերէն բառերն ասորերէն նախաձեւերէն ( — Հայ. գզաթ = գիզաթ = նախասորերէն gizzat եւն —) յառաջ եկած են։ Ասոր չեմ կրնար ինք զինքս որոշել։ Միտ դրուի թէ ձայնաւորի ինչ մեծ կորուստ եղած է շղթայ բառին մէջ. (= աս. šēšaltā), եւ ձայնաւորաց մէջ եղած ուրիշ անկանոնութիւնք։

Ձայնափոխութեան ուրիշ մէկ յատկութեան վրայ ալ հոս պէտք է խօսիլ։ Մէկ կողմանէ ասորի կրկին բաղաձայնք Հայերէնի մէջ պարզ բաղաձայն եղած են, — վասն զի՝ ինչպէս վերն յիշեցինք, Հայերէն լեզուն բաղաձայնի կրկնութիւն ընդհանրապէս չի ճանչնար, ուստի ըստ այսմ ասորերէն bb = Հայերէն բ, ասոր. pp = Հայ. փ, պ. ասոր. qq = ք, ասոր. ṭṭ = թ, ասոր. zz = զ (գզաթ), ասոր. ṣṣ = ց (կացին, ցից), ասոր. ll = ղ, ասոր. nn = ն եղած է. — միւս կողմանէ վեց բառերու մէջ ասորերէն կրկին բաղաձայնք եղած են ն+պարզ

---

[1] Ասորերէն մէջ ĕ եւ ĭի մէջ տարբերութիւն չկայ։ Նէօլտէքէ։ (Ծանօթութիւն թարգմանութեան ժամանակի։)

բաղաձայն մը։ Այսպէս՝ “Թանգար„ = ասոր. taggārā (tangārā ձեւէ). “մանգաղ„ = ասոր. maggẹlā (* mangẹlā ձեւէ.) “անգան„ = ասոր. aggānā. “խնձոր„ = ասոր. ḥazzūrā (* ḥanzūrā ձեւէ.) ծնծղայ„ = ասոր. ṣeṣṣẹlā. “քանքար„ = ասոր. kakkẹrā. Այս բառերէն կրնայ ասորերէն ḥazzūrā հայերէն խնձոր բառէն փոխառեալ ըլլալ, ուստի հոս նկատի չենք առներ. վասն զի հայերէն նձ ասորերէնի անցնելով ի հարկէ nz եւ յետոյ zz պիտի փոխուէր։ Բայց մնացեալ բառերն հայերէնէ չեն առնուած, եւ անոնց կրկին բաղաձայնք կարելի չէ ըսել թէ նախնական n+ պարզ բաղաձայնէ մը յառաջ եկած ըլլան, գոնէ ասորերէն ṣeṣṣẹlā (ծագած צלצלא ձեւէն, եբրայեցերէն צלצלים կոնքք) եւ kakkẹrā (= եբր. kikkār) բառերու համար։ Իսկ եթէ հայերէն քանքարը ասորերէն kakkẹrāին նախնական ձեւէն չէ, ապա ուրեմն եւ ոչ մանգաղ ասորերէն maggẹlāի նախաձեւէն, թէեւ վերջինս արդեամբք * mangẹla կը հնչուէր։ Այլուստ հայերէնի մէջ ամենեւին չի նկատուիր սովորութիւն մ'“անկանոն„ ն մը մուծանել բառերու մէջ։[1] Արդեօք պէ՞տք է հոս ընդունիլ թէ այս բառերն այնպիսի ասորերէն գաւառաբարբառէ մ'առնուած են, որ փոխանակ ggի՝ ng, ṣṣի՝ nṣ, kkի՝ nk կը հնչէր, այնպէս՝ ինչպէս Մանտայերէնը ggի տեղ ng կ'ըսէ (tangārā փոխանակ taggārā) եւ ուրիշ սեմական լեզուք nd

---

[1] Ինչպէս կ'ըսուի սխալմամբ ի Wiener Zeitschr. V, p. 269.

կը հնչեն փխկ՝ dd, ns փխկ՝ ss, nb փխկ՝ bb. (տես Fränkel, Aram. Fremdw. էջ. 136 ծն.։) վճիռ տալ մը չեմ համարձակիր։

Այս տեղ կը դնեմ արդ. հայերէնի մէջ ցայսօր ծանօթ փոխառեալ եւ օտար ասորերէն բառերուն ցանկը։ Անկիւնաւոր չակերտի մէջ առնուած են այն համեմատութիւնք, զոր ուղիղ չեմ համարիր, ինչպէս նաեւ անոնք՝ որոնց համար կրնայ ենթադրուիլ որ սեմական լեզուէ չեն մտած հայերէնի մէջ։ Հայ մատենագրաց քով անոնց ժամանակը դրուած է, որոնց՝ մանաւանդ թարգմանութեանց նկատմամբ՝ միշտ երաշխաւոր չեմ կրնար ըլլալ. վասն զի յայսմ մասին շատ բան տակաւին անապահով է։ Հին եւ Նոր կտակարանէ եղած կոչմունք հինգերորդ դարէն են, ի բաց առեալ (Յովհաննու) Յայտնութիւնն, որ Ը դարէն յառաջ թարգմանուած չէ։ "Վէն. Բառ." կը նշանակէ Վենետկոյ Մխիթարեան Հարց մեծ Բառգիրքը (Վենետ. 1836—37). "Ջախ." կը նշանակէ Ջախջախեանի՝ հայերէն-իտալ. բառգիրքը։ Մ. Խորենացւոյ գրքին կոչմունք եղած են Վենետկոյ 1865ի տպագրութեան համեմատ, ուր որ ուրիշ հրատարակութիւնք չեմ նշանակած՝ ինչպէս Աշխարհագրութեան համար ըրած եմ։ Ընդհանուր կոչմունք (առանց հեղինակաց գրոց էջերը նշանակելու) առնուած են Վենետկոյ Բառարանէն։

1) Աբեղայ (արմատ՝ աբեղայէ-). ասոր. אבילא awīla միանձն. արաբ. أبيل (ասորերէնէ առնուած։)

Աբեղայ բառը շատ գործածուած է. Հմմտ. Բուզանդ, տպ. Վենետ. 1832, էջ 271. Յովհ. Մանդակունի, էջ 102 (Ե դար). Մովս. Կաղանկ. Ա. էջ 129. Ար. Լաստիվ. էջ 27 ևն: Ասորերէնին մէջ հոս ב տառը "խիստ" (կամ "պայթուցիկ") չէ, այլ "մեղմ" (հնչական:) Ասորերէն awīlā պէտք էր հայերէն աբեղայ կամ ըստ հայերէնի օրինաց աբըղայ կամ աբղայ ըլլալ, մինչ այժմ բ կամ ը ձայնին տեղ ե եղած է, ինչպէս նաև սոյնպէս կը գտնենք քանի մ'անգամ ղ տառին սկիզբը, օրինակի համար՝ ուղէղ (— որուն ուղղայ սեռականը * ուղեղա-արմատ մը կ'ենթադրէ.) Նոյնպէս սեռականն շաեղջ (— կայ նաև կանոնաւորն՝ շաղջի) շաեղջ ուղղականէն: Ընդհակառակն շափիղայ = ասոր. šappīlā.

2) Ագուգայ (յք. հյց. -գայ.) ասոր. אגוגא aγōγā ջրմուղ, անցք ջրոյ = յունարէն ἀγωγός.

Ագուգայ կը յիշեն Ստեփ. Սիւնեցի՝ Ը դարուն, Վահրամ՝ ԺԳ դարուն, կանոնք, մինչեւ ՑԸ դար: — Այս բառին մէջ գ տառին տեղ գ ըլլալուն նկատմամբ՝ հմմտ. հալուէ = յուն. ἀλόη (Յովհ. ԺԹ. 39.) սպունգ = σπόγγος. տումար եւ տոմար = τομάριον ևն:

3) Ադէն, Ադէն (դրախտ, Եդեն.) ասորերէն עדן ʿeḏen.

Ադէն ձեւը Լակարտ կը յիշէ Եփրեմէն (Ե դար) առնելով. իսկ Ադէն կը յիշէ Փիլոն (Ե դար. "Յադէնայ.") Վեն. Բառ. կը յիշէ՝ ադէնաբօղոխ, ադէնայէն, ադէնական (Բ, էջ 1041) բառերը: Սակայն կ'երեւայ թէ ադէն (էով) ամէնէն հաւատարիմ ձեւն է (ադէնա- ձեւէն ադնա- պիտի ածանցէր), եւ բոլորովին կը համապատասխանէ ասորերէն ʿẹδenի, վասն զի ẹ շատ անգամ ա կ'ըլլայ հայերէնին մէջ (տես վերը:) — կայ նաեւ Եդեմ յունարէն Ἐδέμէն (Ծն. Բ. 8), որմէ նաեւ եդեմաբօղոխ, եդեմայէն, եդեմեան եւն:

4) Աթօ-թայ (-այօ, -այեց.) նշանագիրք. ասոր. אתותא āϑūϑā նշանագիրք:

Արդէն Վեն. Բառ. կը յիշէ՝ "ասորերէն աթօ-թա է տառ, նշանախեց." բայց եւ այնպէս ἄρϑρον, articulus կը թարգմանէ. իսկ Ջախ. distinzione di suono o di pronunzia dell'abbicì, prosodia delle lettere d'alfabeto. Պետրոսեան (ի New dictionary) elements, letters, characters, alphabet. Այս բառը կը գտնուի՝ Մովս. Խոր. (Ե. դար) էջ 247 եւ Ղազ. (Ե դար) տպ. Վենետ. 1873, էջ 41 եւ 42 տեղերն, որ ցայսօր անճիշդ թարգմանուած են եւ չեն հասկցուած, բայց զորոնք անփոյթ պէտք չէր ընել, եթէ կ'ուզուի Հայոց տառերու գիւտին վրայ եղած այս տեղեկութիւնքը լաւ գործածել: Պէտք չէ համեմատել ասորե-

րէն āθā բառին յոգնակին āθuāθā (Նշանք։)

5) [Ամճ. տեսակ մը բանջարեղէն. (Հմմտ. Բուզանդ, էջ 208, 2. "Եդեն առաջի նորա միրգ, խնձոր, վարունգ եւ ամճ." անդ, տող 10 "զմիրգն եւ զամճն". Եղիշէ՝ Ե դարու, տպ. Վենետ. 1859, էջ 156, "մնեալ էին ուղղոմք զուարակաց, եւ ամճոմք երէոց.") կայ նաեւ ամճաքէր, ὀψοποιός խոհակեր (Ոսկեբ. Մեկն. Մատթ. Գ, 17՝ Ե դարէն.) ասոր. אמץ. արաբ. آمص կամ أميص

Տես Lagarde, Ges. Abh. p. 12—13. Այս բառերն յառաջ եկած են ուղղակի միջին պարսկերէն * āmīč բառէ, որ նոր-պարս. āmēχtan խառնել, āmēz, āmēγ եւն բառերուն կարգէն ըլլալու է։]

6. Ամղան. զգեստ կամ վերարկու. (միայն՝ Յեսու Է, 21. Եղիշէ, տպ. Վեն. 1859, էջ 174, 7 վ.) ասոր. אמלא, āmellā „ψιλή“.

Արդեօք հայերէն այս բառն ասորերէնին տառադարձութիւնն է լոկ թէ այն լեզուէն առնուած յունարէն ἀμλαν հայցականի մը։

7. [Անագ. (արմատ՝ ի-ա- եւ ո-), անագէայ (Հին կտ., Ագաթանգեղոս Ե դարու. Հմմտ. Վենետ. Բառ.) ասոր. אנכה ānχā (բացարձակ ձեւը՝ ānaχ), եբր. ānāχ կապար. արաբ. ānuk կապար. ասորեստանեան լեզուաւ՝ anāku անագ. սումեր. ni-ig-gi, na-ag-ga, an-na, em [սումեր. նախնական ձեւն՝ an(a)g,] սանսկր. nāga կապար, անագ։

Ծագումն անյայտ է այնպէս՝ ինչպէս նաեւ ոսկի՝ ֆիններէն՝ vaski պղինձ, անագապղինձ։]

8) [Անանուխ = ἡδύοσμον (Մատթ. ԻԳ 23. Ղուկ. ԺԱ, 42. եւ Բժշկարանք՝ ԺԳ—ԺԵ դար.) ասոր. נענא nān'ā (փխ. nā'neā), արաբ. نعنع։ Հայերէն բառն անշուշտ փոխառեալ է, պարսկերէն բառէս՝ نانخواه nānexwāh (= հացհամեմ, χwāh = սանսկր. svāda անոյշ բուրումն °), նաեւ نانوخيه nānūχeh = հացդեղ կամ Ննի տունկ (Ammi), du Cange νανοῦχα. Անանուխի եւ Ննիի վրայ՝ տես Löw, Aram. Pflanzennamen, p. 259 ff. Միտ դրուի պահլաւերէն nānā nānūkspram անանուխ իբր հացհամեմ (Bundeh. էջ 66, 21.) — Լակարտ պարսկերէն բառը հայերէն Մանանեխի հետ կը համեմատէ, որ սակայն sinapis կը նշանակէ։]

9) Անգան (Թիւք ԺԲ, 8 "Լեսուին յանկանէ".) θυΐα. ասոր. אגנא aggānā մեծ աման մը, տաշտ եւն. եբր. אַגָּן արաբ. إِجَّانَة եւ أَنْجَانَة (Fränkel, p. 68.) ասորեստ. agannu.

Հայերէն Ագանօքն (Ես. ԻԲ, 24) լոկ տառադարձութիւն է յունարէն *αγανωθ բառի մը = եբր. אַגָּנוֹת Ես. ԻԲ. 24։

10) [Ապրսամ (կամ ապրասամ, ապրսան, ա-պրասան) բալսամ (տունկն ու հիւթը) կը յիշէ Ստեփ. Սիւն՝ Ը դար եւ քանի մ'այլ յետին ժամանակի մատենագիրք. ասոր. apursāmā եւ pursāmā (pursemā?) մանտայերէն՝ pursẹmā. — Պարսկերէ՞ն է արդեօք։]

11) Աքսորք, աքսորանք, աքսորել (Խոր. եւն) ասոր. אכסיריא (e թէ a, k թէ χ?) կամ ուղղակի = յունարէն ἐξορία.

12) Բաղմակ (արմատ՝ է-ա-) λύχνος կանթեղ, լամբար (Հին կտ.՝ Ե դար եւն. տես Վեն. Բառ.) ասոր. מזמכא mazmeχā, որ դժուարաւ սեմական է։ — Անշուշտ պարսկերէն է բառս։]

13) [Բաժակ (արմատ՝ է-ա-) (Մատթ. Ժ. 42, Մարկ. Է. 4, Ագաթ. էջ 373 եւն). որմէ բաժակել ποτίζειν. Հրէարէն בזך իբր bazak կամ בזיך իբր bazīk որ աւելի հաստատուն կ'երեւայ։ — Անշուշտ պարսկերէն է. Համմտ. զանդիկ bajina աման (KZ, 25, 567), սանսկր. bhājana աման։]

14) Բասիր, բասրել (մեղադրելի, մեղադրել) (Մովս. Խոր. էջ 41, 16. 96, 14 եւն), բասրանք διαβολή, αἰτία. ասոր. בסיר bęsīr անարգ։

15) [Բերդ. (Բուզ. էջ 205, 206 եւն) դժուարաւ = ասոր מרדא merdā.]

16) [Բէբ. (արմատ՝ է-ա-), որ հին ու սովորական բառ մըն է, ըստ պատահման միայն եբրայեցերէն בָּבָה bāwā, ասոր. בבתא bāwęϑā բառերուն նման կը հնչէ։ Համմտ. պարսկ. ببك babak.]

17) Բուծին. պատրոյգ (միայն Բարսեղ, Վեցօր. Ե դարէն, էջ 57.) ասոր. בוצינא būṣīnā φλόμος փղոմոս խոտ (պարսկերէնէ առեալ։) Համմտ. պահլաւ. būčīnā (Justi, Bundeh. p. 90, Phl. Paz. Glos. p. 4, 1) վարունգ = ասոր. בועינא եւ Nöldecke, ZDMG, XXIX, p. 650.

18) ԳԱԴԷՇ (սեռ. գադշի) շեղջ (որայի, Հռութ. գ. 7 = στοιβή եւ Ցօնակ. Ը դարու եւ յետոյ.) ասոր. gẹδīšā (եբր. gādīš.)

19) ԳԱՂՈՒԹ. (արմատ՝ է-) գաղթականութիւն (Փիլոն, Եփրեմ՝ Ե դար.) ասոր. גלותא gālūϑā, եբր. גלות յաքսոր տանիլ, գաղթող:

Հոլովմանէն (գաղթի եւն) առեալ յետոյ նաեւ գաղթ ձեւն կազմուեցաւ իբրեւ ուղղական եւ հայցական: Գաղութէն կ'ածանցին գաղթական (փախստական, Ա. Մակ. Ձ. 53. յք. ἀνασωζόμενοι. Բուզանդ, էջ 170,2. Վարդան. տպ. Վենետ. էջ 146), գաղթել (փախչիլ՝ Բ. Թագ. Դ, 4. ἀναχωρεῖν.)

20) ԳԶԱԹ (սեռ. գզաթու.) ոչխարենի բրդով, գեղմն, (Դատ. Զ. 37—40 πόκος, եւ Եղիշէ, Դատ.) ասոր. גזתא gezzẹϑā.

21) ԳՈՒԲ (սեռ. գբի, գբոյ.) λάκκος, φρέαρ (Հին կտ., Յայտ. Յովհ. Թ. 1—3. Մովս. Կաղ. Ա, էջ 59.) ասոր. גובא gubbā.

22) ԳՈՒՐՊԱՅ. ասոր. גורבא իբր gorbā, պարսկերէնէս՝ gōrāb, gōrab, որմէ նաեւ արաբ. جورب տաճկ. چوراب զանկապան:

Վեն. Բառ. կոչում կ'ընէ միայն Մաշթոց (Ե—ԺԳ դար) եւ Յակ. Ղրիմեցի (ԺԵ դար:) Բառիս գ տառը (փոխ՝ ք) կը ցուցընէ որ Նոր հայերէն է: Համմտ. վարն՝ արաբերէն փոխառութեանց առթիւ դիտողութիւնքը:

23) [ԳԱՆՁ. (արմատ է-ա-, սեռ. գանձի.)

(Մատթ. Ե, 25. Ղուկ. ԺԲ, 58. Մարկ. Զ. 27 ὑπηρέτης, πράκτωρ, σπεκουλάτωρ. Բուզ. էջ 16, 20.) ասոր. דחשא dahšā (բացարձակ ձեւն՝ իբր deheš.)

Վերջինս ստուգիւ բնիկ ասորերէն չէ, ուստի երկուքն ալ ուրիշ տեղէ առնուած են: Ասոր. š փխկ՝ (պարսկ.) č տես Fränkel, p. 95. — Հայերէնին համար՝ հմմտ. Նաեւ դահճապետ, ἀρχιμάγειρος Ծն. ԼԹ, 1:]

24) Դար (արմ. դարու-) (Հին կտ., Ագաթ., Մ. Խոր. էջ 11, 6 եւ 24 եւն.) ասոր. דרא dārā (բաց. dār.)

25) [Դարգէճ (դարգէճու՞) պատգարակ. արամ. דרגשׁ իբր dargaš անկողին. ասոր. dargūštā պատգարակ, որորան:

Հայերէնին մէջ չենք կրնար որոշել թէ վերջին ձայնաւորն է՞ թէ ու էր, վասն զի բառը միայն բարդութեանց մէջ կը գտնուի, այսինքն՝ դարգէճակալ, պատգարակի վրայ կրեալ (Կիւրեղ Երուսաղ., Կոչ. ընծ. էջ 382, Ե դարէն) եւ դարգէճայծ (Յովհ. Վանական՝ ԺԳ դար. Ոսկիփորիկ Մ. Երզնկացւոյ՝ ԺԳ դար. ուր խօսքն է "մահճի" եւ "խորգի" վրայ:) Արամէական այս բառերը բնիկ սեմական չեն, ուստի ասոնք եւ հայերէնն ուրիշ տեղէ առնուած են:]

26) Դիղլաթ (կամ Դիկլաթ, Դգլաթ) Տիգրիս (Մ. Խոր. Աշխ. ըջ 611—613. Հրտ. Պատկան. էջ 21, Սուքրեան՝ էջ 31, 37, 38. Սուտ-կալխթ. էջ 90, 91, 123, Սեբէոս, Հրտ.

Պատկ. էջ 31, 6 եւն. Դեկղաթ, Դիկլաթ՝ Թովմ. Արծր. տպ, Կ. Պ. էջ 104. Պատկան. էջ 94.) ասոր. דקלת deqlaϑ, Պլինիոսի քով՝ Diglito, Թալմուտ-պահլ. דגלת (Bundeh. էջ 51, 12, 17.) արաբ. دجلة Հմմտ. Kiepert, Alte Geogr. p. 79.

27) Զոյգք (սեռ. զուգից) (ζεῦγος Ղուկ. Բ. 24 եւն) եւ ածական՝ զոյգ (կրկին) եւ մակբայ (նմանապէս, Բուզ. էջ 237.) ասոր. zaugā = յուն. ζεῦγος, որ ամէն արամէական բարբառոց անցած է, որմէ է նաեւ արաբ. zauǰ زوج (Fränkel, p. 106.)

Զոյգքէն կ'ածանցի զուգել (Մատթ. ԺԹ, 6 զուգեաց = συνέζευξε. — Յոբ, ԻԸ, 17 զուգեսցի = ἰσωθήσεται.) Շատ կը գործածուի զոյգ նաեւ իբր առաջին անդամ բազմաթիւ (գիտնական լեզուի) բարդութեանց, այսպէս՝ զուգաթիւ (ἰσάριθμος) եւն: Հայերէն զոյգ. = ասոր. zaug- ձեւին համեմատելու է հայերէն Յոյն. = հին-պարս. Yaunā Ἴωνες. — Յունարէնէ առնուած է զոմ (նաւակամուրջ, Սեբէոս՝ յԷ. դարու, Հրտ. Պտկ. էջ 31, 5վ.) յունարէն ζεῦγμα (ռամկ. ζεύμα.)

28) Զուպայ, տունկ մը (արմատ՝ զուպայի-) Յովհ. ԺԹ, 29. Եբր. Թ, 19 եւն ὕσσωπος, ասոր. זופא zōpā (Löw, Aram. Pfl. p. 134.)

29) [Զուարակ (արմ. է-ա-) (Ելք, ԻԲ, 1, 14 μοσχάριον, μόσχος եւն. ասոր. אוברכא ezwarkā ցուլ:

վերջին ասորի բառը ընիկ չէ. արդեօք հայերէնէ՞ առնուած է յասորերէն։]

30) [ԸՆԿՈՅԶ (Ծն. ԽԳ, 11) ընկոյզ, որմէ ԸՆԿՈՒԶԻ (Ծն. Լ, 37.) եբր. אֱגוֹז ('igōzէ ըստ Լակարտի.) վրացերէն՝ nigozi, օսեթերէն՝ ängózä Դ, ängū'z Թ, yidghah' oγuzah, պարսկ. گوز քրդերէն gu'iz, govīz արաբ. jauz, տճկ. jevz. Հմմտ. Լակարտ, Ges. Abh. 25. Tomaschek, Pamir-Dial. 58 եւ Bezzenb. Beitr. VII, 202. իմ գրութիւնս՝ Etymol. und Lautlehre d. osset. Spr. p. 124.—Ըստ Hehnի՝ ընկոյզ, նուշ եւ շագանակ փոքուն Ասիոյ հիւսիսային կողմերէն կու գան. ուստի թերեւս այս բառերն հայերէն կամ ուրիշ փոքրասիական լեզուէ մ'առնուած են։ — Վեն. Բառ. ԸՆԿՈՅԶ ձեւը կ'ընտրեն. սակայն միտ դնելու է որ հայ ձեռագրաց եւ տպագրութեանց մէջ յաճախ կը շփոթուին նուրբ եւ միջակ տառք ոնգականներէ ետեւ։ — Հայերէն ԸՆԿՈՅԶԻ հին ձեւն է՝ ըստ ձայնաւորի օրինաց՝ հնագոյն *ingoiz (*ingauz- ձեւէ՞, հմմտ. օսեթերէն՝ ängózä որ *angauz- ձեւէ յառաջ եկած է։]

31) ԹԱՆԳԱՐ, վաճառական (Սեբէոս, Հրատ. Պտկ. էջ 104, 5վ. ուր ԹԱՆԿԱՆԳԱՐ բառն ուղղելու է ԹԱՆԳԱՐ. Թովմ. Արծ. Ժ դարէն, Հրատ. Պտկ. էջ 99, 22. ԺԳ դարէն՝ Վարդան, տպ. Վենետ. 1862, էջ 63) Սիրաք ԻԶ, 28 κάπηλος. ասոր. תגרא taggārā, մանտայերէն tangārā,

արաբ. tājir (արամէականէն, հմմտ. Fränkel, p. 181), ասորեստանեան՝ tamkaru, tamgaru.

Օտար բառ մըն է։ Գործածականն է՝ պարսկ. վաճառական։

32) Թարահատայ (սեռական) առ Գր. Նարեկ. Ժ դար, (ուղղ.) Վարդան՝ ԺԳ դարէն. Թարհատայ՝ Եփրեմ, Ա, էջ 225, 11 (Ե դար). Մ. Խոր. էջ 101, 5վ։ Դից մ'անուն է. ասոր. תרעתא tarʿaϑā = ʾΑτάργατις, Δερκετώ.

33) Թարգման (արմատ է-ա-) (Ծն. ԽԲ, 23 եւն.) ասոր. תרגמנא targe̥mānā, ասորեստանեան՝ turgumannu, targumannu.

Ասկէ են Թարգմանել, Թարգմանիչ, Թարգմանութիւն (հին եւ շատ գործածական։)

34) Թարշիշ (սեռ. Թարշշի, Եզեկ. Ա. 15), Թարսիս (սեռ. Թարսսայ, Երգ Երգոց Ե, 14), ազնիւ քար մը. եբր. תרשׁישׁ taršīš, յուն. θαρσίς.

35) Թոհ եւ բոհ կամ Թոխ եւ բոխ (Եփրեմ, Թովմ. Արծր, Վարդան.) ասոր. תהו ובהו tōh we̥ wōh.

36) Թրթուր (սեռ. Թրթրոյ) (Ամովս Դ, 9. Երկ. Օր. ԻԸ, 42. Յովէլ, Ա, 4, Բ. 25. Գր. Արշար. Է դարէն. Մխիթ. Գոշ՝ ԺԲ դարէն, տպ. Վենետ. 1854, էջ 128.) ասոր. צרצורא ṣarṣūrā մարախի տեսակ մը (°)։

Բառին ձեւն ու նշանակութիւնը բոլորովին համեմատ չեն։

37) Լումայ (արմատ՝ լումայէ-) λεπτόν (Մարկ. ԺԲ, 42, Ղուկ. ԻԱ, 2.) ասոր. לומא

lumā (որ ծագած է * numa ձեւէ եւ այս վերջինս ալ լատիներէն nummusէն։) — Անկէ է Լումայափոխ χερματιστής Յովհ. Բ, 14։

38) Խանութ, նաեւ Հանութ (սեռ. խանթէ, է-արմատ, Ագաթ., Եփրեմ, Եւսեբ. Ե դարէն եւն.) ասոր. חנותא ḥānūϑā, արաբ. حانوت ḥānūt (արամերէնէ։)

39) Խարափուլ αττάκης (Ղեւտ. ԺԱ, 22) մարախի տեսակ մը. ասոր. הרגלא ḥargẹlā, արաբ. حَرْجَل ḥarjal. մարախ (տես Dozy), حَرْجَلة ḥarjala մարախաց խումբ։

Պարսկերէն χarjal (անթեւ մարախ) ապահովապէս արաբերէնէ առնուած է, ուստի սխալ բառ մըն է փոխանակ ḥarjal.

40) Խարբ (արմատ՝ է-) սուր (ըստ Վեն. Բառ. կը յիշեն զայս Փիլոն, Ծննդոց Գիրք ԺԵ դարէ, Դիոնես. Թրակացի եւ քանի մը քերականական եւ բառագիտական գործքեր՝ ԺԳ, ԺԴ եւ ԺԷ դարու.) ասոր. חרבא ḥarbā.

Յունարէն ἅρπη (= կոլ. scrupu) ուրիշ է. հմմտ. Bezz. Beitr. I, 287.

41) Խարբալել = σινιάζειν մաղել, մաղէ անցընել, Ղուկ. ԻԲ, 31, յետոյ՝ փորձել, խռովել, շփոթեցընել. ածանցած խարբալ մաղ բառէն, որ հին հայերէնի մէջ չի յիշուիր. արամ. ערבלא ʿarbālā, արաբ. غربال γirbāl մաղ։

42) [Խղունճ (կամ խղնջուն, խխնջխուն՝ Մխ. Գոշ՝ ԺԲ դարէն, էջ 67. սեռ. յք. խղունճոց առ Բարսղի՝ Ե դարէն, տպ. Վենետ. 1830, էջ

152, 24. յք. ուղղ. Խղընձոյն՝ նոյնպէս Բառսեղ.) Հրէական արամ. חלזון ասոր. חליזונא իբր ḫlezōnā, արաբ. حلزون ḥalazūn. (դժուարաւ սեմական ծագմամբ):]

43) խմոր. (արմատ՝ ո-) (Մատթ. ԺԳ, 33 եւն.) խմորել. ասոր. חמירא ḥẹmirā, արաբ. خمير χaɯīr: — (°)

Պէտք էր բուն խմիր կամ խամիր ըլլալ՝ փոխանակ խմոր:

44) [խնձոր. Երգ Երգոց Բ, 5 եւն. ասոր. חזורא ḥazzūrā * ḥanzūrā ձեւէ մը:)

Որովհետեւ խնձորն ուրիշ բառով կը բացատրեն սեմական այլ լեզուներ, կարելի է որ ասորերէնը հայերէնէն փոխառեալ ըլլայ: — Ըստ կանոնի փոփոխման նուրբ եւ միջակ տառերու ռնգականէ մ'ետքը՝ կը գրուի նաեւ խնծոր, բայց անշուշտ խնձոր կը հնչուէր. ասոր դէմ չի զօրեր Լեհահայոց խընձըր արտաբերելն (Wiener Zeitschrift. I, 299), վասն զի այս բարբառը հնոյն ձ հնչիւնը կը պահէ. (տես նոյնը II, 127):]

45) [խոյ. (արմատ՝ ի- եւ ո-) Ծն. ԺԵ, 9. ԼԱ, 10. ԼԲ, 14 եւն. Ըստ Լակարտի "անշուշտ այս բառն է որ իբրեւ כוי (kōy) մտած է Թալմուտերէնի մէջ:„ — (°)

Ըստ Վէն. Բառ. ասոր հետ կապ ունի խոյակ, սեան գլուխ (— "ի ձեւ գլխոյ խոյոյ„ ըստ Վէն. Բառ. —) եւ խոյանալ, բանի մը վրայ սուրալով յարձակիլ (ար-

ծուղ) "իբրեւ զխղ„ Երկ. Օր. ԻԸ, 49. Ղեւոնդ, տպ. Փարիզ 1857, էջ 29։]

46) [Խորգ. (արմատ օ-) պարկ (Ղուկ. Ժ, 13. Զգօն, Բուզանդ՝ Ե դարէն.) ասոր. כורגא χurgā, արաբ. خرج χurǰ պայուսակ. (որմէ քրդերէն χurǰ.)

Պարսկերէնէ առնուած է. Հմմտ. նոր-պարսկ. χurǰin (խուրջին), պալուչի՝ hurǰīn, hōrǰīn, օսեթերէն՝ χurǰin (յք. χōrǰēntʽä) եւն պայուսակ, թամբապարկ (°)։ Անշուշտ միջին-պարսկերէն *χwarγ բառ մը կար. վերջին գ տառին համար՝ հմմտ. պարսկ. արաբ. sar, թամբ = օսեթ. sarγ, աֆղ. sarγ̇, արամ. סרגא միջին-պարսկ. *sarγ ձեւէ մը։ — Կ'երեւայ թէ բաց ի *χwarγ բառէն՝ միջին-պարսկ. kurz (քուրձ) բառ մ'ալ գոյութիւն ունէր. տես վարը՝ Թ. 133։

47) Ծնծղայ (արմատ՝ է-) (Ա. Թագ. ԺԸ, 6. Ա Կոր. ԺԳ, 1 եւն.) ասոր. צצלא ṣeṣṣelā.

48) Ծոթոր (օ- արմ.) տունկ (ըստ Վեն. Բառ. միայն ԺԳ [Վարդան] եւ յաջորդ դարուց մատենագրաց քով.) ասոր. צתרא ṣaϑrā (ṣeϑrā?) արաբ. صعتر լատ. „satureia."

Վեն. Բառ. կը յիշէ նաեւ ծոթորին, ծոթրին, ծոթորուն տարբեր ընթերցուածքները։ — Տես Löw, Aram. Pflanz. p. 325.

49) Ծոմ. (Զգօն, Եփրեմ, Ա. Մակ. Գ. 47 եւն.) ասոր. צומא ṣaumā (նաեւ ṣōmā, բացարձակ եւ բաղադրեալ ձեւն՝ ṣōm է.) եբր. צום

50) Ծրար (-րի) (Ծն. ԽԲ. 27. Ա Թագ. ԻԵ, 29 եւն.) ծրարել. ասոր. צררא ṣẹrārā, եբր. צְרֹר ծրար, կապոց։

51) Կաթսայ կամ կադսայ (արմ. Ի-) (Ելք. ԺԶ, 3 եւ ըստ Լայկ. նաեւ Եզեկ. ԻԴ, 3. Միք. Գ, 3. Ժող. Է, 7.) ասոր. קדסא qaδsā (ծագած χάδοςէն, որ վերջինս ալ է = եբր. כד χαδ դոյլ։)
Հայերէն մէջ Թ գիրը փխ. Դ (* կադսայ) յաջորդ անհնչական Ս տառին պատճառաւն է։

52) [Կապար. (արմատ. -ո եւ Ի-ա) Ելք. ԺԵ. 10 եւն.) կապարեայ (Ստ. Ասողիկ՝ ԺԱ դարէ, տպ. փարիզ, 1859, էջ 135 եւն.) ասոր. אברא awārā, եբր. עֹפֶרֶת ʿōfereϑ, արաբ. պարսկ. abār (արամերէնէ։) (°)
Պէտք էր ասոր. awārā, բառին դիմացն Հայերէն *աւար ըլլալ. ուստի շատ անհաւանական է այս համեմատութիւնը։ Ի՞նչպէս դատելու է արդեօք պալուչի abtar (բոբեան), պարսկ. kaftār (Dames, Vocab. p. 29.) Հայերէն կաշկարայ յուն. ἐσχάρα Արամերէնի մէջ սկզբան ק տառին צ փոխուիլը՝ տես Fränkel, p. 95, 150, 151։)]

53) [Կապարճ. (արմ. Ի- եւ Ի-ա-) Ծն. ԻԷ, 3 եւն. ասոր. קטרקא, קטירקא qẹṭērqā?
Հայերէն բառս ասորերէնէն չէ, ասորերէնն անշուշտ պարսկերէնէ. համմտ. պահլ. כנתיר կապարճք, ի Թերթին ZDMG, XLVI, 141.]

54) Կաշկարայ. (Ղեւտ. Բ, 7. Է, 9. ԺԱ,

35. Բ Թագ. Ջ, 19. Բ Մնաց. Դ, 16 ևն. ἐσχάρα, χυτρόπους առձեռն կրակետղ ոտքերով, ποδιστήρ.) ասոր. כסכרא kaskẹrā կողով (կրելի։)

Այս համեմատութիւնը կը յիշեցընէ՝ արաբ. كانون (ածխաման) = յուն. χανοῦν (հիւսկէն կողով) բառերու նմանութիւնը, զոր Fränkel, p. 26 կը մերժէ։ Սակայն հմմտ. Վանդալ ἐσχάρα (կասկարայ) Ելք Լ, 3 եւ σπυρίς (կողով) Գործք. Թ. 25 (թէեւ բուն կը նշանակէ՝ ցանց ու վանդակապատ։) — Ի՞նչ յարաբերութիւն ունի յուն. ἐσχάρα = Նոր Հայ. ըօճաղ, օճաղ (Աշխ. Բառ. Վենետ. 1869), Թալմուտ. אסקלא (Լակ.։)

55) կատու (սեռ. կատուոյ. Փիլոն՝ Ե դար. Մ. Գօշ՝ ԺԲ դար, Վենետ. 1854, էջ 81.) ասոր. קטו qaṭū (qaṭṭū կամ qāṭū?) վրացերէն kata թուշերէն katu են։ Տես իմ՝ Etym. d. osset. Spr. p. 122.

Ասորերէն բառն ալ փոխառութիւն է. ուստի Հայք ուրիշ լեզուէ մ'առած ըլլալու են։ Բառիս ծագումն մութ է։

56) [Կարկեհան. կարմիր գոհար մը ἄνθραξ (Ելք, ԻԸ, 18. Եզեկ. Ժ, 9 ևն.) ասոր. כרכדנא karkednā = χαρχηδόνιος.

Անկէ է Ֆրայթակի (Freitag) յիշած արաբ. كركند karkand զոր կը մեկնէ gemma similis rubino seu carbunculo. — Լակ. "արաբ. kerkouhen կը յիշէ Plempius 165

մեղեսիկ„, տես karkuhan մեղեսիկ Dozyի բառարանին մէջ: — Հայերէն բառն աւելի նման է արաբերէնին՝ հ տառովը, երկուքն ալ պարսկերէնէ (որ հին δ տառն h կամ g կը փոխէ,) առնուած պիտի ըլլան:]

57) կարկուրայ (արմ. է-) Նաւ, կուր (Հիւսիքոս, Թրգմ. Ստ. Սիւն. Ը դարու. Եփրեմ՝ Ե դարու.) ասոր. קרקורא qarqūrā, արաբ. قرقور qurqūr = յուն. κέρκουρος.

58) կարմիր. (արմ. ու-) (իբր ածական՝ Մատթ. ԻԷ, 28 եւն, եւ իբր գոյական՝ կարմիր գոյն, զգեստ եւն κόκκινον Բ Մնաց. Բ, 7, 14. Գ, 14.) եբր. כרמיל karmīl խիստ կարմիր՝ բոսորային գոյն եւ այն գունով նիւթ:

Եբր. karmīl ուշ ժամանակի եւ ոչ-բնիկ բառ է, որ միայն Բ. Մնաց. Բ, 6, 13. Գ, 14 կը գտնուի, ուր Հայն՝ կարմիր թարգմանուած է: Երկուքն ալ պարսկերէնէ առնուած պիտի ըլլան:]

59) կացին (արմ. ու- եւ է-ա) (Ա Թագ. ԺԳ, 20 ἀξίνη) חצינא ḥaṣṣīnā, ասորեստ. ḥaṣinnu, արաբ. خصين կացին Fränkel, p. 86.)

Բուզ. էջ 22, 1վ կացնեաւ ըսելով՝ կացնէ ուղղական մը կը գործածէ: Այս բառին մէջ միայն կը տեսնենք կ ասոր. ḥի տեղ եւ ց ասոր. ṣṣի տեղ:

60) կատու (արմ. ու-) Թռչունք (Երեմ. ԺԷ, 11. Մ. Խոր., Մ. Գոշ, էջ 115, Հ). եւ պար

(Ոսկ. տպ. Վենետ. 1862, Ա, էջ 66, 20). կաքաւել, պարել (Բ Թագ. Զ, 16. Մատթ. ԺԱ. 17. ԺԴ. 6.) ասոր. קקבא qaqqᵉwā (Հագիւ թէ կը գտնուի). գործածուած կը գտնուի ապահով קקבנא qaqqᵉwānā կաքաւթռչուն, յուն. κακκάβη, պարսկ. kabg, պահլ. kabg, kawg եւն։

Ուստի՞ ծագած է այս բառը։

61) Կեղեւ (արմ. ա-) (Երգ Երգոց Դ, 3), ասկէ կեղեւել (Ծն. Լ, 37) ասոր. קלפא qᵉlāfā, բայ՝ qᵉlaf մորթը՝ կեղեւը հանել։

62) [Կնիք. (կնքոյ) (Եզք ԻԸ, 11, 36 եւն) ասորեստանեայ լեզուաւ kunukku?

Թերեւս կը սպասուէր հայերէն *կնուք բառ մը որ կրնայ ի հարկէ կնուք եւ ի վերջոյ կնիք եղած ըլլալ. (հմմտ. ասորեստ. duppu = ելամերէն dipi = հին-պարսկ. dipi արձանագրութիւն = սանսկրիտ՝ lipi գիր, արձանագրութիւն։) Բայց որո՞ւն միջնորդութեամբ ասորեստանեայ բառն Հայոց եկած է։ Արդեօք հնագոյն ժամանակներն ուղղակի յԱսորեստանեայց՝ իրենց տէրերէն՝ առած են Հայք, եթէ միայն (այժմու) Հայք այն ատեն Հայոց աշխարհի մէջ կը բնակէին։]

63) Կուզ (ի- եւ ա- արմատ.) աքիս, կզաքիս, կատու. (Կիւրեղ Երուս., Ոսկ. Ե դարէն, Յովհ. Մամիկ. Է դարէն, Վարդան՝ ԺԳ դար.) ասոր. קוזא qūzā աքիս, քրդերէն՝ كوزه կզաքիս։ Տես Hehn, Kulturpflanzen III, p. 403. —

Ասորերէն qūzā դժուարաւ բնիկ սեմական է, ուստի նաեւ Հայերէնն ուրիշ տեղէ մ'առնուած կրնայ ըլլալ:

64) կուպր (արմ. ու- եւ բաղաձայն.) Ծն. ԺԱ, 3 ἄσφαλτος եւն.) ասոր. כופרא kufrā, արաբ. kufr (արամերէնէ, Fränkel, p. 150.) եբր. כֹּפֶר kōfer, ասորեստ. kupru.

Հայերէնին մէջ կը սպասուէր որ քուփր կամ քուպր (քուփր ձեւէ մը) կերպարանք ունենար այս բառը:

65) Հաշիւ (Ղուկ. ԺԲ, 58. — Ա Կոր. ԺԶ, 1 λογία,) ասկէ հաշուել (Ղեւտ. ԻԷ, 23, Մ. Խոր. էջ 9, 4. 16, 21.) ասոր. חשב ḥęšaw հաշուել, համրել. ḥaššew կարծել, համարիլ (գրբ. հաշուիմ.) חשיב ḥešīw համարուիլ, կարծուիլ:

66) Հեգ (արմ. է- եւ ո-) հեգելը, վանկ, հեգենայ (արմ. է.) վանկ, այբուբեն. հեգել վանկերն ոգել՝ ըսել συλλαβίζειν Վեն. Բառ.) ասոր. הגא hęγā ընթերցաւ. הגינא heγyānā ընթերցումն, կարդալն, հեգելն. արաբ. هجا hijā հեգելն, վանկ:

Հայերէն այս բառերն հին եւ նոր ժամանակի մատենագրաց քով կը գտնուին: Հմմտ. Ղազ. Փարպ. տպ. Վենետ. 1873, էջ 41, 15, 21. Մ. Խոր. էջ 246, 4: Բայց Վեն. Բառ. յիշած վկայութիւններէն կարելի չէ ասոնց որոշ նշանակութիւնն իմանալ: Հայերէն հեգենայ (*հեգեանայ ձեւէ

մը ծագած, վերջինս ալ *ՀԵԹԵԱՆՈՅ ձեւէ) ըստ հնչման բոլորովին կը նոյնանայ ասոր. heγyānāի հետ։

67) [ՀԵԹԱՆՈՍ (արմ. է-ա.) (Մատթ. ԺԸ, 17 ἐθνικός. Մարկ. Է, 26 Ἑλληνίς յոյն կին.) յք. ՀԵԹԱՆՈՍՔ (τὰ ἔθνη, Մատթ. Դ, 15. Զ, 31. Ժ. 5. Բուզ. էջ 195, 16, 17 եւն.) յունարէնէ ծագած է, ուստի չէ = ասոր. התנוס որ յունարէն ἔθνοςի տառադարձութիւնն է եւ լեզուին մէջ անգործածական։

Սկիզբն հ մը յաւելեալ է, ինչպէս նաեւ «հալուէ» = ἀλόη։ Թէ այս բառն եւ թէ ԵԿԵՂԵՑԻ = ἐκκλησία, ՊՈՂՈՏԱՅ = πλατεῖα կը ցուցընեն՝ որ հայերէնը միտութիւն մ'ունի ռնգականաց եւ նայ (liquide) տառերուքով svarabhakti կազմելու։]

68) ՁԷԹ, ἔλαιον (Մատթ. ԻԵ, 3), ἐλαία (ձիթապտուղ, Միք. Զ. 15.) ասոր. זיתא zaitā, որուն բացարձակ եւ բաղադրեալ ձեւն է zēϑ (եբր. זַיִת), որմէ կը սպասուէր հայերէն ՁԱՅԹ կամ ՁԷԹ բառ մը։ Համմտ. արաբ. zait (արամերէնէ, Fränkel, p. 147), ոսեթ., վրաց. zetʿi, թուրքերէն zetʿ.

ՁԻԹԵՆԻ (որ ածանցեալ է ՁԷԹ բառէն ԵՆԻ մասնկամբ) ըստ Hehnի (Kulturpflanzen, III 8) Յառաջակողման Ասիոյ հարաւային կողմանց բոյսն է, որուն մշակութիւնը կը կորսուի եթէ Ասիոյ խորերը մտնենք։ Ուստի դժուարաւ Հայոց աշխարհն այս տնկին

հայրենիքն եղած կրնայ ըլլայ[1]. եւ չէր դժուարաւ ընիկ Հայերէն բառ է, եւ կամ սեմական լեզուէ մ'առնուած՝ թէեւ ձայնական տարբերութիւն կայ մէջերնին, եւ կամ ուրիշ (Փոքուն Ասիոյ) լեզուէ մը։ (Ըստ ZDMG XLVI, p. 123 זית եգիպտական d̲oit ձիթապտուղ բառէն յառաջ եկած է։) Սովորական Հայերէն բառն է եղ (եղ) = յուն. ἔλαιον?

69) **Մագաղաթ** (արմ. ե-) (Ես. ԼԴ, 4 եւն). ասկէ՝ մագաղաթեայ (Յայտ. Զ. 14.) ասոր. מגלתא me̥γalle̥ϑā, եբր. me̥γillā, արաբ. majalla (արամերէնէ Fränkel, p. 247.)

70) **Մախաթ** (արմ. ա-) հերիւն (Վարք Հարանց. Մարթին՝ ԺԴ դար. Ոսկիփորիկ՝ ԺԲ դարն ետքը.) ասոր מחטא me̥ḥaṭṭa ասեղ, me̥ḥaṭ saqqa հերիւն։

71) **Մանգաղ** (ե-ա արմատ.) (Մարկ. Դ, 29. Երկ. Օր. ԺԶ. 9 եւն.) ասոր. מגלא magge̥lā (= mange̥lā, եբր. maggāl, արաբ. منجل minjal (արամերէն magge̥lā բառէն. տես Fränkel, p. 133) պարսի՝ mangāl (ZDMG, XXXVI, p. 71.)

72) **Մանիշակ** (-շակի կամ -շկի) (Ներս. Լամբր.՝ ԺԲ դարէն. Մ. Գոշ՝ ԺԲ դարէն, էջ 34. Մխ. Հերացի՝ ԺԲ դարէն, էջ 69, Մաշթ. ջահկ.՝ ԺԴ դարէն.) ասոր menīškā.

---

[1] Թէեւ՝ ինչպէս կ'աւանդուի, Հայոց ջերին կողմերը կը բուսնի ձիթենի։ Ըստ Մ. Խոր. Աշխ. էջ 610 Ուտի նահանգին մէջ կային ձիթենիք։ Արծրունի (Տնտեսական դիրք Հայոց Տաճկաստանի, թրգմ. Ամիրխանեանց, Պետր. 1879, էջ 13) ձիթենին եւ ձիթապտուղն Հայոց աշխարհի կարեւոր բերքերուն մէջ չի հաշուեր։

Մանիշակ բառին ուրիշ ձեւ մ'ալ կայ՝ մանուշակ, զոր կը գործածեն Փիլոն, Ագաթ. (Ե դար.) Մ. Խոր. Աշխարհ. տպ. պատկ. էջ 22, 11, Ստեփ. Սիւնեցի (Ը դար.) Թուղթ, Մեծ. (Ժ դար.) եւն. եւ կը համապատասխանէ պարս. banafša, արաբ. banafsaj եւ manafsaj, տճկ. menefše եւն. բառերուն։ Անշուշտ բառս բուն պարսկերէն է եւ հին պահլաւերէնն իբր manafšak ըլլալու է (Justi, Bundeh. p. 66, 17 manavšak), որ հայ շրթանց մէջ պէտք էր որ վանաւշակ կամ մանաւշակ հնչուէր (հմմտ. կաւշիկ = պրս. kafš եւն։) Անկանոնութեամբ մանուշակ եղած է բառս. հմմտ. վարդ՝ սասուեր որ safserէ ծագած է։ Նաեւ ասորերէն բառն այս դիպաց մէջ պարսկերէնէն յառաջ եկած ըլլալու է։ Աչքի կը զարնէ հոս ի (ī), ինչպէս նաեւ հայուն քով ու (ū), ուր պարսկերէնն af է։

73) Մաշարայ. (Փիլոն, Ճառք, տպ. Աւգերեան, 1822, էջ 66. Մ. Խոր. էջ 237, 7 մաշարայական ախտ.) משרא māšrā ἐρυσίπελας (վարդախտ։)

Վեն. Բառ. այս բառին դիմաց φθίσις կը դնէ (հիւծումն, հալեւմաշ.) Ջախ. կը տատամսի՝ ծիւրախտի եւ մորթախտի մէջ. Փիլոնի քով՝ մաշարայ դրուած է = νόσος φθινώδης (ծիւրիչ ախտ. աս բառէն յառաջ ալ ուրիշ ախտը յիշուած = ἑρπηνώδης.) Մովս. Խոր. այս հիւանդութեան

"Հիւծումն" ըլլալը կը յայտնէ: Ընդհակառակն Մխիթար Հերացի (ԺԲ դար, Ջերմանց Մխիթարութիւն, տպ. Վենետ. 1832, էջ 72) կը գրէ "այտոց (= այտոյց ?)..., որ ծաղարայ կոչի, եւ հոռոմ արուսիփուղէլ (= ἐρυσίπελας) ասէ:"

74) Մաշկ. (Ղեւտ. ԺԱ, 32 եւն. δέρμα.) ասոր. משׁכא meškā, արաբ. mask, ասորեստ. mašku. — Անկէ մաշկեղէն՝ Մարկ. Ա, 6 եւն:

75) [Մարգ. (Ա Մակաբ. Թ. 42 ἕλος. Բարսեղ՝ Ե դար. Ստ. Սիւն.՝ Ը դար. եւն.) ասոր. מרגא margā, արաբ. marǰ (մարգագետին), զոր արդէն Արաբացիք (տես Fränkel, p. 129) պարսկերէն կ'ըսեն: Հմմտ. պրսկ. marγ տեսակ մը խոտ (Vullers: „genus graminis quod bestiae pascentes libenter vorant," եւ marγzār այն տեղն՝ ուր marγ կը բուսնի, մարգագետին. քրդերէն՝ mirk, կ. mergha (Justi-Jaba, Dict.) Ասոնց հիմն է անշուշտ հին-իրանեան marγa բառ մը, զոր կ'ենթադրեմ թէ կը գտնուի յԱւեստա, Վեդ. Բ, 26. haϑra mareγå avastaya (հոն մարգեր կազմէ:)

76) Մաքս. (Հռովմ. ԺԳ, 7. մաքսաւոր, Մատթ. Ե, 46.) ասոր. מכסא maχsā, եբր. מֶכֶס, արաբ. مكس maks (արամերէնէ, Fränkel, p. 283.) ասորեստ. maksu:

77) -[Մգլահոտ, մգլոտածի հոտ ունեցող (Գիրք Վաստակոց՝ ԺԳ դար, տպ. Վենետ. 1877, էջ 100, 10 եւն. Առաքել Դաւրիժ.՝ ԺԷ դար.) Մգլել. ասոնք՝ իմաստի տարբերութեան պատճա-

ռաւ՝ դժուարաւ կրնան ասոր. מגלא muγlā (Թարախ. ձիթապտղոյ կորզի հիւթ) եւ արաբ. majl (մորթոյ փապարածքի տակ եղած ջուրը) բառերու հետ նոյն ըլլալ:]

78) [Մեքենայ, Մէնքենայ, Մէնքանայ. (Բուզ. էջ 123, 1 եւն.) Թէեւ -այ կը վերջաւորի, բայց ասորերէնէ չէ, որ mēχanē կ'ըսէ, այլ = յուն. μηχανή, μάγγανον, μαγγανεία. Համմտ. արաբ. manjanīq, լատ. machina եւ manganum.]

79) Մալվաշէ(էց) (սեռ. յք.) = ասոր. malvāšē կենդանակերպք: Այս բառն լոկ տառադարձութիւն է ասորւոյն: Տես Wiener Zeitschrift IV, p. 191—92.

80) Յամոյր (արմ. է-ա-) τραγέλαφος (Յոբ. ԼԹ, 1), δρυξ (՞ Երկ. Օր. ԺԴ, 5.) Մ. Խոր. ասոր. יחמורא yaḥmūrā, եբր. יחמור yaḥmūr, արաբ. يحمور yaḥmūr. — Հայերէնին մէջ "յամուր" կը սպասուէր փխ "յամոյր:

81) Նածրացի (Եղիշէ, տպ. Վենետ. 1859, էջ 21.) Նածարացի (անդ, էջ 123 եւ 140.) ասոր. נצריא naṣrāyā, մանդ. nāṣōrāyā, արաբ. نصرانی naṣrānī, յք. naṣārā քրիստոնեայ:

Այլուր կը գործածուի Նազովրեցի = Ναζαρηνός Մարկ. Ա, 24. Ναζωραῖος Մատթ. Բ, 23: Վերջաւորութիւնը (-ացի, -եցի) հայերէն է:

82) [Նէշ. (անհոլով) կէտ, նշան. (Մ. Խոր., Եփրեմ՝ Ե դար. Յովհ. Մամիկ.՝ Է դար. Գր. Լուս., Շարական.) ասոր. נישא nīšā նպատակ (պարսկերէնէ՞:)

Հայերէնը պարսկերէնէ՞ թէ ասորերէնէ առնուած է: Հմմտ. հայերէն նշան = պրս. nišān.]

83) ՇԱԲԱԹ (արմ. շբ.) Մատթ. ԺԲ, 8 եւն. ասոր. שבתא šabbęϑā, եբր. שבת šabbāϑ, որմէ յուն. σάββατον եւն. bb տառերն պարզեցնելով՝ եղած է պազ. šanbaδ (Schik. Gum. Vij., p. 267), պարսկ. šanbaδ եւ šanba, եթովպ. sanbat եւն: Հմմտ. Nöldeke, Pers. Studien, II, p. 37.

84) ՇԱՄՐԷԻ, սամարացի. (Ջգօն՝ Ե դար.) շամրէացէ (Ա. Մակ. Գ. 10. Եւսեբ. Քրոն.՝ Ե դար, Անան. Շիրակ. էջ 22.) շամրէացւոց (ա-ղանդ, Կիւրեղ Երուսաղ.՝ Ե դար.) խառնակ ձեւ մըն է ասորերէն šamrāyā եւ յուն. Σαμαρείτης բառերէն:

Հմմտ. սամարացի Σαμαρείτης Մատթ. Ժ, 5՝ ծագած Σαμάρειաէն:

85) [ՇԱՄՓՈՒՐ կամ ՇԱՓՈՒՐ (արմ. ?) (Մ. Խոր. էջ 227, 14. Թովմ. Արծր.՝ Ժ դարէն, Պետրբ. 1887, էջ 66, 13) դժուարաւ կրնայ նոյն ըլլալ סמפור (յք.) բառին հետ, որ անգամ մը կը գործածուի Թարգումի մը մէջ եւ դժուարաւ սեմական է: Նշանակութիւնն ալ մթին է, բայց՝ ինչ ալ ըլլայ՝ ոչ "շամփուր:"]

86) ՇԱՒԻՂ (արմ. ?) ճամբայ τρίβος Մատթ. Գ, 3. արահետ, հետք, ἴχνος Բ Կոր. ԺԲ, 18. Բուզ. էջ 23, 6. ասոր. שבילא šęwīlā, արաբ. sabīl.

87) ՇԱՓԻՂԱՅ. (կամ շափիղայ, սեռ. շափի-

ղայ եւ շափեղայք) պատուական քար մը σάπφειρος (Ելք, ԻԸ, 18. ԼԹ. 11. Յայտն. ԻԱ, 19. Եզք. ԻԴ, 10. Յոբ, ԻԸ, 16.) ասոր. ספילא sappīlā, եբր. סַפִּיר

Հոս միայն կը տեսնենք շ փխ. ס: Վեն. Բառ. կը յիշէ իբրեւ ուղղական շափիւղ, անշուշտ շափիղայ եւ (յետոյ) շափիղէ սեռականաց պատճառաւ:

88) **Շեփորայ** (նաեւ չեփորայ. արմ. է) փող. (Ագաթ., Զգօն, Ե դարէն.) ասոր. שׁיפורא šīfōrā, եբր. שׁוֹפָר հմմտ. պարսկ. شیپور šīpōr? = արաբ. شبور

Վեն. Բառ. կը յիշէ ուղղական շեփոր, չեփոր, սեռ. չեփորայ ձեւերը:

89) **Շղթայ**, (արմ. է) (Մարկ. Ե. 3 եւն.) ասոր. שׁישׁלתא šēšaltā.

Հայերէն ձեւը բոլորովին նման չէ ասորերէնին, եթէ նաեւ հետեւցընենք որ շղթայի նախնական ձեւ էր *շշղթայ եւ այս վերջնոյս՝* շեշղթայ: Սակայն հմմտ. նաեւ Թալմուտերէն՝ שׁושׁילתא

90) **Շուկայ**, փողոց, վաճառանոց. (Ոսկիփ. ԺԲ դարէն ետքը. Մատթ. Ուռհայեցի՝ ԺԲ դարէն. Բարսեղ Մաշկ. ԺԴ դարէն.) ասոր. שׁוקא šūqā (պահլաւ. šūkā, տես Pahl. Paz. Gloss. p. 214.) արաբ. سوق sūq (արամերէնէ, Fränkel, p. 187.)

91) **Շուշան** (արմ. է-ա) (Մատթ. Զ, 28 եւն.) եբր. שׁוֹשַׁן šōšān, ասոր. שׁושׁנתא šōšane̥ϑā, յք. šōšannē (աւելի հաստատուն է ō գրել

քան ū.) արաբ. سوس. հմմտ. յուն. σοῦσον (Լակ. Ges. Abh. p. 227.)

Եգիպտական ծագումն ունի բառս: Տես Brugsch, Hieroglyph. Wörterbuch, IV, 1314/15. Erman, ZDMG. XLVI, p. 117.

92) Շուշմայ. (արմ. է) կնճիթ (sesamum) (Ներս. Շնորհ.՝ ԺԲ դարէն. Սանահնեցի՝ ԺԱ դարէն. Բժշկ. ԺԳ—ԺԵ դար.) ասոր. שׁוּשְׁמָא šušmā.

93) Շուշփայ կամ շուշպայ (արմ. է) մարմնակալ (corporal) եւ սրբիչ պատարագի. (Մաշթոց ջահկ. ԺԴ դար.) ասոր. שׁוּשׁפָא šū-šeppā.

94) [Շուփայ. օծանելիք աչաց, իբրեւ տարբերութիւն ընթերցուածոյ հայ թեղ (κολλύριον) բառին (ի Յայտն. Գ. 18.) կը յիշէ Յակոբ Ջահկ. (ԺԴ դար.) ասոր. שׁיפא šeyāfā, որմէ արաբ. شياف (Fränkel, p. 262.)

Պէտք է ասորերէն שׁוּףא երկրորդական ձեւ մ'ենթադրել שׁוּף արմատէն: Հայերէն բառն այլուր չի գործածուիր:]

95) Շպար, սնգոյր. շպարեմ, շպրեմ, սնգոյր քսել երեսին. (Եզեկ. ԻԳ, 40. Ոսկեբ.՝ Ե դարէն, եւն.) ասոր. שׁפר šefar գեղեցիկ էր, šufrā գեղեցկութիւն, šappir գեղեցիկ:

Շպրեմ ենթադրեալ ձեւ մըն է: Ոսկեբ. Ա. (տպ. Վենետ. 1862), էջ 66, 22 (Մեկն. Ա Տիմ., 8) "է շոյշ պարէշէ„ խօսքին ուրիշ ընթերցուած մ'ալ կայ "է շոյշ

Շղրէշէ։" խնդիր է թէ պէտք չէ՞ հոս ալ "Շղարէշէ" կարդալ։

96) Ուրբաթ (արմ. ու—) (Մատթ. ԻԷ, 62 եւն.) ասոր. ערובתא ʿẹrūwẹϑā, արաբ. عروبة (առամերէնէ, Fränkel, p. 277.)

97) [Չաման (արմ. ա) Մատթ. ԻԳ, 23. Ես. ԻԸ, 25, 27, 28.) ասոր. כמונא kammōnā, եբր. kammōn, պունիկերէն՝ χαμᾶν, արաբ. kammūn, յուն. κύμινον, լատ. cumīnum, գերմ. Kümmel եւն. (Löw, Aram. Pfl. p. 206.)

Հայերէն բառն իւր սկզբան ւ հնչման պատճառաւ ուղղակի ասորերէնէ առնուած չի կրնար ըլլալ։]

98) [Պայուսակ. (արմ. ի-ա) (Մխք. Ձ, 11. Յովհ. Կաթ.՝ Ժ դար. Եզնկ. ԺԳ—ԺԴ դար.) պայուսակի (Սեբ. տպ. Պետր. 1879, էջ 147, 5 վ., ուր Կ.Պոլսոյ տպագրութիւնը էջ 231, 1 պայըսակի ունի.) պայուսակի (Անան. Շիրակ., հրտ. Պատկան. էջ 29, 2), պղուսակի եւ պայուսակ (Ոսկեբ.՝ Ե դարէն.) ասոր. פיוסיג կարդալու է פיוסג payūsag կամ paivasag, պարսկ. payūza?, paivaža (Lag., Ges. Abh. 74.) վրացերէն՝ pavasaki (հայերէնէն մտած։) — Ծագումը պարսկական է։]

99) [Պապկայ. (արմ. ի) չունի ուղղակի կապ արաբերէն ببغا babaγā կամ babγā բառին, վասն զի արդէն Փիլոն եւ Սուտ-Կալիսթենէս (Ե դար) կը գործածեն։ Կրնա՞յ նախ ասորերէնէն առնուած ըլլալ։ Հմմտ. ասորերէն Սուտ-Կալիսթենէս, էջ 211, 9 անգամ մը אפפ

ψίτταχοι (אגפבի՞ տեղ։) Արդեօք անունս Թըռչ-նոյն հետ ծովու ճամբով Բաբելոնի՞ վրայէն Ա-սորիք եւս անցած է։ (Նեօլտէքէ։)]

100) Պողոտայ (արմ. է) ճամբայ (Բուզ. էջ 16, 6—7 եւն.) אִיטלפ plāṭīā յուն. πλατεῖα, լատ. platea, գոթ. plapja, գերմ. Platz եւն։

Յունարէնէ՞ առնուած է հայերէնը թէ ասորերէնէ։]

101) Պրակ. (արմ. է-ա). 1) Թփուտք, մա-ցառք, անտառակ (Փիլոն, Թովմ. Արծր. 2.) յք. Պրակք = πράξεις (τῶν ἀποστόλων) (Գործք Առա-քելոց. Ոսկ. Յովհ. Բ. Յովհ. Իմաստ.՝ Ը դար. եւն.) հմմտ. պրակաւորոյք եւն. = πράξεις αὐ-τῶν (Եփրեմ, տպ. Վենետ. 1833, Գ, էջ 117/8, Առաքելոց անվաւեր պատմութիւնք. 3) Պրակք. գլուխ, հատած. (Դաւիթ Փիլիսոփ. տպ. Վենետ. 1833 յաճախ. Ե դարէն.) վերջինս՝ հրէարէն פרק, אקרפ päreq, perqā հատած (գրքի.) ասոր. perqā կտոր (մը նիւթ։)

102) Սաբա, ծեր. (ըստ Վեն. Բառ. միայն անգամ մը գործածուած՝ առ Եւսեբ. Եկղ. Պտմ., (Ե դարէն, տպ. Վենետ. 1877, էջ 499, 16 տ. ուր յոյն բնագիրն է ὁ πρεσβύτης.) ա-սոր. אבס sāwā.

Սաբաի տեղ կրնար նաեւ սաբայ գրուիլ։

103) Սակուր. (արմ. է-ու.) պատերազմի կացին. (Բուզ. էջ 232), աւելի սակրաւոր, զի-նեալ սակրով. (անդ, էջ 118, 17. 204. 232.) կայ նաեւ սակր (Մ. Խոր.) արամերէն՝ סקוריא

ուստի արաբ. صاقور ṣāqūr (Fränkel, p. 84.) լատ. secūris(?)

104) [Սաղար. սաղարակ, կողով. (Ես. Գ, 26. Ղազ. Փարպ.՝ Ե դար. Մ. Կաղանկ. էջ 144, 7 վ. 174, 2.) ասոր. ספטא seftā (կամ saftā?) արաբ. سفط կողով:

S. Fränkel ի Թերթին Kuhn's Literaturblatt, I, 416 այս բառերն՝ օգնութեամբ պարսկ. sabad, արաբ. سبذه sabaδa բառերուն՝ հնագոյն պարսկ, sapatէ մը յառաջ կը բերէ, որմէ առնուած է նաեւ հայերէնը:]

105) Սատանայ (արմ. ի) Մատթ. Դ. 8 (ὁ διάβολος) Դ, 10 (Σατανᾶ կոչական) եւն. ասոր. סטנא sāṭānā.

106) Սափրեմ, վիրալ, գլխոյն մազերը կտրել. (Փիլոն՝ Ե դար. Ստեփ. Սիւնեցի՝ Ը դար. Արիստ. Լաստիվ.՝ ԺԱ դար.) ասոր. ספר sappar ածիլեց:

107. [Սեղան (արմ. ո) (հին ու յաճախ գործածուած.) չի կրնար եբր. שלחן šulḥan սեղան բառն ըլլալ:]

108. Սեռն. անուոյ լիսեռն (Սիրաք, ԼԶ, 5 ἄξων. Փիլոն, Ստ. Սիւն.) ասոր. סרנא sarnā (բաց. ձեւ. sran, sren?)

Հմմտ. սռնակ ἄξων, λύγος. Ռամկ. նաեւ լծսեռն = սեռն, բայց գրականօրէն լծ-սեռն (Վեն. Բառ. կը յիշէ միայն յք. լծսռունք, լծսռունս) = κνήμη, σφόνδυλος.

— Հայերէն ս տառն չի տեղ՝ յաջորդ ք-ի պատճառաւ է։

109) Սիք (արմ. ս) մեղմ հով (Ագաթ. տպ. Վենետ. 1862, էջ 204. Եզնիկ, տպ. Վենետ. 1826, էջ 92, Ե դար.) ասոր. זיקא zīqā հով. արաբ. zīq հով (արամերէնէ, Fränkel, p. 285, ասորեստ. zīqu.)

Սիք բառին ս տառն անկանոնութեամբ մտած է փխ. զ տառի, ինչպէս նաեւ ք փխ. կ։ Թերեւս հայերէն սիք արաբ. صيق ṣīq հով բառին հետ արամերէն ձեւէ մը յառաջ եկած է, որ ս տառով կը սկսէր։

110) Սուին (կամ սըւին) տէգ, նիզակ. (Ես. Բ, 4 = ζιβύνη. Մ. Խոր. էջ 73, 7 վ. ասոր. סוביניא իբր sūwīnā. Ուստի՞ կը ծագի։

Հայերէն սուին ըստ հայերէնի ձայնաւորաց օրինաց ծագած է սուվին կամ սիւին ձեւէ։ Հմմտ. պարսկ. žōpīn (Fird, I, 337, 3 եւն. բայց ի՞նչ կը հնչուէր. žūbīn? Lag., Ges. Abh. p. 68.), արաբ. եւ պարսկ. زوبين զոր Գիլանցիք կը գործածէին. յուն. ζιβύνη, σιβύνη, σιγύνη, լատ. sibina. — Բարդութեան մէջ սուն (սուին ձեւէ) կ'երեւայ, օրինակի համար՝ սունաւոր (սուինաւոր.) Բուզ. 118, 17։

111) Սուսեր. (արմ. սի-ս) (Ես. Բ. 4 եւն. հին եւ յաճախ գործածուած.) ասոր. ספסירא safsērā բառէ, որ առնուած է σαμψήρα յունարէնէ, եւ վերջինս ալ պարսկերէնէ, ուր պահլ. šafšēr կը գտնենք. (Haug, Pahl. Paz. Gloss. p. 10,

եւ 213. ZDMG, XLIII, 38 ծն.) եւ նոր պարսկ. šamšēr (զոր արդէն կը գործածէ Jātkār i Zar. p. 54. Mātīkān i čatrang, p. 5, 1. Պահլ. վենտ. էջ 171, 2 կ.։) Բառիս ու փխ. af ունենալուն համար՝ տես վերը Մանուշակ՝ Մանիշակ բառին տակ։ — Լակ. Ges. Abh. p. 72—73.

112) Սպեղանի (արմ. է-ս.) (Ես. Ա, 6 եւն.) ասոր. אספליניא esplēnyā, յուն. σπληνίον կալանդ։ — Յունարէնէ՞ առնուած է թէ ասորերէնէ։

113) Տարմալ. (նաեւ տարմալակ, տարմաղակ.) քսակ, պարկ. (Հին բառ՝ ԺԳ — ԺԴ դար. Տօնակ.՝ Ը դար. եւ յետոյ՝ Ոսկեփ. ԺԲ դարէն ետքը. Երզնկաց. Մատթ. ԺԳ — ԺԴ դար.) ասոր. טרמלא ṭarmālā.

114) Տերեւ (արմ. ―) (Մարկ. ԺԱ, 13 եւն). ասոր. טרפא ṭarpā, բաց. ձեւն ṭęref.

Փր. Միւլլէր (Հայկականք Զ, 64) այժմ հայերէն տերեւ-ի կը համեմատէ սանսկրիտ. darbhá խոտաթփուտք, հին հնդ. zurba դալարավայր, կիզակաւ. որուն դէմ է արդէն նշանակութիւնը։

115) Տղայ (արմ. ―) (Հռովմ. Բ, 20 νήπιος եւն.) ասոր טליא ṭalyā, բացարձակ ձեւը՝ טלא ṭęlē տղայ։

116) [Ռաբբունի (Մարկ. Ժ, 51) րաբբունի (Յովհ. Ի, 16), րաբունի՝ = չէ հրէարէն רבּוֹנִי rabbōnī, ribbōnī, այլ ուղղակի = ῥαββουνί (տարբեր ընթերց. ῥαββονί) = διδά-

σχαλε (ով վարդապետ) Մարկ. Ժ, 51 դնելու է. Համմտ. ռաբբի = ῥαββί Մարկ. ԺԱ, 21:

Յետոյ ասկէ (Ժ — ԺԳ դար) րաբուն, րաբունաբար, րաբունական, րաբունապետ, րաբունարան, րաբունել:]

117) [Ցեց. (արմ. ս) (Մատթ. Զ, 19 եւն.) չի յարմարիր ըստ հնչման ոչ եբր. סָם, ասոր אסָם, արաբ. سوس եւ ոչ (բնիկ կամ փոխառեալ) յուն. σής (ցեց) բառին, թէեւ այս բառերը նման կը հնչեն:

Յուն. σής, սեռ. σεός հին-յուն. ses արմատ մը կ'ենթադրէ, որ եթէ բնիկ է՝ նախայունական sves, kjes, tyes եւ նման (syes ըստ G. Meyerի, Alb. Studi, III, 41) բառէ ծագած պիտի ըլլայ: Յունարէն սեռ. σητός, յգ. σῆτες հոլովելն եղած է նմանութեամբ այլ ης, ητος վերջաւորութեամբ բառերուն, ինչպէս χρής, χρητός եւն. Kühner-Blass, Ausf. Gram. d. griech. Spr. I, p. 471—72. Բայց այս նախայունական ձեւերուն չի համապատասխաներ հայերէն ցեց- արմատն նաեւ այն ատեն, երբ Bartholomaeի հետ (Stud. z. idg. Sprachg. II, p. 11) ընդունինք որ հայերէն ց գիրն ծագած է նախնական 1) sy է = յուն. h բառասկիզբը եւ 2) k'yէ (ըստ Barthի = յուն. χτ), 3) k'sէ = յուն. ξ եւ 4) k'h կամ sk'h = յուն. χ, σχ.]

118) Ցէց (արմ. ո) (Ագաթ., Փիլոն ևն.) ասոր. צצא ṣeṣṣā։

Անկէ է ցցեմ։ Բայց չեմ կարծեր որ ասոր հետ կապ ունենայ նաեւ ցցուն (Ղեւտ. ԺԹ, 27. Գ Մակ. Դ, 6. Բուզ. էջ 253, 1) = σισόη (խպտ. jičōi), զոր կը մեկնէ Լակ. “մազեր փունջ փունջ քովէքով զատել դնել։„

119) Փեգենայ, փեգանայ, տունկը. πήγανον (Ղուկ. ԺԱ, 42. Մ. Գօշ. Առակք, էջ 49.) ասոր. פיגנא արաբ. فيجن յունարէն πήγανον բառէն։ Տես Löw Aram. Pflanz. p. 372.

120) Փրկեմ (Մատթ. Թ, 21, 22. Մարկ. Ե, 28. Զ. 56 ևն.) ասոր. פרק pęraq փրկել, ազատել. pārōqā փրկիչ, purqānā փրկութիւն։

Բնիկ հայերէն կազմութիւն է աս բառէն՝ փրկանք (Մատթ. Ի, 28. Եփք, ԻԱ, 30. Բուզ. 197, 10 ևն), ինչպէս նաեւ փրկել ևն։

121) Քահանայ. (արմ. է) (Մատթ. ԺԲ, 4—5. Մարկ. Բ, 26. Ղուկ. Զ, 31. Յովհ. ԺԸ, 15 ևն). ասոր. כהנא kāhnā, եբր. כֹּהֵן արաբ. كاهن։

122) Քաղաք (արմ. է-ա) (Մատթ. Բ, 23. Ժ. 14, 15, 23. ԻԱ, 17. ԻԳ, 24 ևն.) ասոր. כרכא karχā (բաց. ձեւն էր անշուշտ kęraχ)?

Ըստ հնչման բոլորովին չի համապատասխաներ։ Հայերէնէ փոխառեալ է վրացերէն քալաքի, ոսեթ. քալաք, թուշերէն՝ քալէք։

123) Քաղդեայ (արմ. է-) քաղդէացի, աստղագէտ, աստեղանշմար. (Դան. Բ, 2, 4, 5. Փիլոն, Եւս. Քրոն.) ասոր. כלדיא Xaldāyā (նաեւ = աստեղահմայ) = յուն. Χαλδαῖος (Դան. Բ, 2 եւն:)

Անկէ Քաղդէութիւն (Բուզ. էջ 252, 10—11.) — Բուն նախնաբար նոյն էր ասոր հետ Քաւդեայ (արմ. է) դիւթ, հմայող (Բուզ. էջ 165, 5. 166, 3, 6, 29. Եզնիկ. Փիլոն.) Քաւդէութիւն՝ (Եղիշէ, էջ 14 10), թէեւ նորանշան է այն՝ որ կը տեսնենք այս բառին մէջ – փխ. ղ: — Պէտք չէ շփոթել ասոր հետ ի հարկէ Խաղտիք = Χάλδοι (Բուզ. էջ 179, Եղիշէ, էջ 72 եւ 97) Հայոց հիւսիսային արեւմտեան կողմը:

124) Քանքար. (արմ. ո) տաղանդ (գումար.) (Մատթ. ԺԸ. 24 եւն.) ասոր. ככרא kakke̥rā, եբր. kikkār.

125) Քարոզ. քարոզող, ծանուցանող, լըրաբեր. (Ա. Տիմ. 2, 7 κῆρυξ. Բուզ. էջ 15, 1 եւն.) որմէ քարոզել, κηρύσσειν (Մատթ. Գ, 1, Դ, 17. ԺԱ, 1. Մարկ. Ա, 14. Ե, 20 եւն.) ասոր. כרוזא kārōzā յուն. κηρύσσειν բառէն:

Արդէն Դան. Գ, 4 כָּרוֹז kārōz հրաւիրակ, քարոզ. Ե, 29 כְּרַז քարոզել, հրապարակաւ ծանուցանել:

126) [Քարտէս թուղթ (գրծ. Քարտիսի Բ Յովհ. 13.) կայ նաեւ Քարտէզ. Քարտէն (°), սեռ.

քարտէնէ (°). քարտ, սեռ. քարտէ առ Փիլոնի, Սեբերիանոսի եւն՝ Ե դարէն եւ յետոյ) անշուշտ չէ ասոր כרטיסא χartīsā կամ χartēsā բառէն = արաբ. قرطاس, այլ ուղղակի յունարէն (δ) χάρτης բառէն (եւ ոչ χάρταις էն)։]

127) Քաքար. (արմ. ք-ա) կարկանդակ, λάγανον. ըստ Վեն. Բառ. միայն ի Հին-կտ. գործածուած՝ Ելք, ԻԹ, 2. Ղեւտ. Բ, 4. Թիւք Զ. 15, 19. Բ Թագ. Զ. 19. Ա Մնաց. ԻԳ, 29.) ասոր. חהורתא ḥāḥurtā (յք. ḥāḥrāϑā), որ նոյնպէս կը գտնուի Աստուածաշնչի ասորի թարգմանութեան Ելք ԻԹ, 2. Ղեւտ. Բ, 4. Թիւք Զ, 19 տեղերը։

Այս բառն ուրեմն միայն գիտնական փոխառութիւն մըն է։ Ս. Գրոց Հայ թարգմանիչը Հոս ալ ասորական tā վերջաւորութիւնը կրճատեր է։

128) [Քրսամն (գրծ. քրսամամբ. այլ ընթերցուած՝ քէսամն) բոյս մը (Ervum) (ըստ Վեն. բառ. յիշուած միայն Հին Բառարանին մէջ՝ ԺԳ—ԺԴ դար. = ὄροβος եւ Նւս. Եկեղ. Պտմ. Ե դար, տպ. Վեն. 1877, էջ 158, 17վ "Քրսամամբ խնուլին զզօրութիւնս տանջեցելոց" = ὀρόβοις μὲν ἐμφράττοντες τοῖς ἀθλίοις τῶν αἰδοίων τοὺς πόρους.) արաբ. كرسنة karsanna. Հրէարէն՝ միջնայական כַּרְשִׁינָא նոր պարսկ. karsana, du Cange χαρσένα.

Պարսկերէնէ առնուած։ Հմմտ. Löw, Aram. Pfl. p. 105 եւ 228. — Նոյն է

յետոյ գործածուած ՔՈՒՇՆԱՅ բառին հետ. տես վարը՝ թ. 130։

129) ՔՆԱՐ (արմ. է-ա.) (Ծն. դ, 21 եւն.) ասոր. כנרא kennārā, եբր. kinnōr, յուն. κινύρα.

Համմտ. ՔՆԱՐ χορδή (Նաւում դ, 8)?

130) ՔՈՒՇՆԱՅ (սեռ. -այէ) ընդեղէն, զոր կը յիշէ միայն Գիրք Վաստ. ԺԳ դար (ՔԱԿԼԱՅԻ, ԿԷՈՒԷՌՆԻ եւ ՈՍՊՆԻ հետ.) ասոր כושנא kušnā ոսպնավլիգն բոյսը. պարսկ. کشنی, کشنك, արաբ. کشنی = کرسنه. Համմտ. թ. 128։

Համմտ. Lag. Ges. Abh. p. 59. Löw, Aram. Pfl. p. 228.

131) ՔՈՒՈՍԻԹԱՅ, կնգուղ. (Եւագր.՝ Ե դար. Սա. Ուռպէլ.՝ ԺԳ դար. Հին Բառ. ԺԳ— ԺԴ դար. Ոսկեփորիկ՝ ԺԲ դարէն ետքը. (ասոր. כוסיתא kosīϑā.

132) ՔՈՒՐԱՅ (արմ. է-) հալոց, հնոց. (Կիւրեղ Երուս.՝ Ե դար. Ոսկեբ. Ես.՝ Ե դար. Թովմ. Արծր.՝ Ժ դար. Իգնատ. ԺԲ դար.) ասոր. כורא kūrā, պարսկ. کوره հնոց։

133) [ՔՈՒՐՑ. (-է) պարկ = կոշտ զգեստ. (Բուզ. էջ 25, 22. Հին կտ. Եփրեմ՝ Ե դար եւն.) ասոր. כורזתא kurzϑā, כורסתא kursϑā, արաբ. كرز kurz (ոչ սեմական, տես Fränkel, p. 82.)

Ասոր. כורז, כורס չեն գտնուիր գործածուած։ Լակարտ կ'ըսէ որ այս բառն հայերէնէ փոխառեալ է ասորերէնի մէջ։ Արդեօք երկուքն ալ պարսկերէնէ՞ առեալ են։]

134) Քուրմ. (արմ. է-ա) (Ագաթ. Ե դար. Ջենոբ Գլակ, տպ. վեն. 1832, էջ 25, 9, 20. Մէք. Ասոր. ԺԴ դար եւն.) ասոր. כּוּמרא kumrā (ոչ kurmā)

135) Քրքում. (արմ ո) (Երգ Երգոց Դ. 14. Մ. Խոր. Աշխ. տպ. Պատկան. էջ 25 եւն.) ասոր. כּוּרכּמא kurkęmā, եբր. כַּרְכֹּם (Երգ Երգոց Դ, 14,) արաբ. kurkum, նոր պարսկ. karkum (փխ kurkum, Լակ. Ges. Abh. p. 58. սանսկր. kuṅkuma = crocus sativus.)

136) Քօշ = քաւշ. (արմ -է) (Ծն. ԺԵ, 9 αἶξ. Թիւք ԻԹ, 22 χίμαρος. եւն.) ասոր. כבשׁא kewšā, արաբ. كبش, եբր. כֶּבֶשׂ:

Հմմտ. Fränkel, p. 109. Արդեօք նախապատմական ժամանակն այս արաբական բառն իրի՞ն հետ մտած է յԱրամայեցիս:

---

Այս բառերէն եկեղեցական բացատրութիւնք են՝ քահանայ, քուրմ, աբեղայ, Եդեն, սատանայ, նածրացի, շամբէտ, շաբաթ, շուշփայ եւ քուաքնայ, բոյսի եւ անասնոց անուն են՝ ղողայ, ծոնոր, յէն, մանիշակ, շուշան, շուշմայ, քաշնայ, քրքում, ինչպէս նաեւ ոերեւ, ոզնուր, խարաբուղ, կապու, կոռղ, կաքաւ, յամոյր, քաւշ եւ նաեւ մաշկ եւ գղամ. գրութեան եւ ընթերցման վերաբերեալ բացատրութիւններ են՝ ոնոււնայ, հեգ(ենայ), մագաղաթ. զինուց բառեր են՝ խարբ եւ սուսեր, սակուր եւ սուսէն. առտնին գործիներ եւ կահ-կազմած են՝ կոզէն, մախաթ, ցէց, մանգաղ, եւ խարբալէմ, սափրեմ բայերը.

նոնայ, նայնարայ. երաժշտական գործիքներէն՝ ծնծղայ, շեփոր, թմբուր. վաճառականութեան եւ առեւտրի բառերէն՝ նանգար, լոմայ, քանքար, հաշխ եւն։

---

Բ.

## ԱՐԱԲԱԿԱՆ ՓՈԽԱՌԵԱԼ ԲԱՌԵՐ

Հայք տեղւով զատուած էին Արաբացիներէն, ուստի հազիւ Է դարուն արաբական աշխարհակալութեամբ ուղղակի յարաբերութեան մէջ մտան Արաբացւոց հետ։ Այս ժամանակէն ի վեր Հայք՝ դոյզն ընդհատութեամբ՝ մահմետական իշխանաց (Արաբացւոց, Սելճուքեանց, Մոնկոլաց, Օսմանեանց եւ Պարսից) հպատակ մնացած են եւ են մեծաւ մասամբ նաեւ այսօր։ Ուստի կարելի էր կարծել, որ իրենց լեզուն արաբերէն բառերով այնչափ խճողուած ըլլայ, որչափ իրենց տեարց՝ Տաճկաց ու Պարսից։ Բայց այսպէս չէ յիրականութեան, եւ այս՝ այն պատճառաւ որ Հայք մահմետականութեան չդարձան, այլ ամենայն ճգամբ հաւատարիմ եւ պինդ յարեալ մնացին քրիստոնէութեան եւ քրիստոնէական կրթութեան, այնպէս որ հայերէնը բոլորովին ազատ էր արաբերէն փոխառեալ բառերէն այն ժամանակն՝ երբ մահմետական Պարսից լեզուն անթիւ արաբական փոխառեալ բառեր ընդունած էր։ Սեբէոս (Է դարուն)՝ որչափ ինձ ծանօթ է՝ եւ ոչ հատ մ՚արաբական բառ կը գործածէ, ի հարկէ ի

բաց առեալ անունները։ Ղեւոնդ պատմիչ (իբր 800ին) բաց ի անուններէն եւ տիտղոսներէն (ամիրալմումնին = ամիրապետք) միայն սա բառերը կը գործածէ՝ իբրեւ արաբական իրաց ուրոշեալ ասութիւնք, այսինքն՝ կուռայ (ընթերցողք կուրանի, յք․) եւ ֆուրկան (= կուրան)։ Թ—ԺԱ դարուց մատենագիրք՝ բառագիրքէն դատելով՝ շատ քիչ արաբական բառեր կը գործածեն, ի բաց առեալ դարձեալ անուններն ու տիտղոսները։ Հազիւ ԺԲ դարէն ետքը աւելի յաճախ կը գտնենք մատենագրութեան մէջ արաբական բառեր, ինչպէս յաջորդ ցանկը պիտի ցուցընէ։ Բնականապէս այս ամէն բառերէն ոչ ամէնը կենդանի լեզուին կը պատկանի․ շատն ալ՝ ինչպէս աստղաբաշխական բառերն՝ ոչ թէ իբր Հայերէն, այլ իբր նոյն իրաց արաբական անուանակոչութիւնք գործածուած են, ուստի պէտք չէ իբրեւ Հայերէն նկատել զանոնք. շատ մ’ալ ըստ պատահման գործածուած, գրական լեզուին յատուկ բառերն են, որ ժողովրդեան լեզուին մէջ ամենեւին մտած չեն։ Արաբական բառեր ամէնէն աւելի կը գտնուին ի Հարկէ արաբերէն աղբիւրներէ քաղեալ գործոց մէջ, ինչպէս են բժշկական գրութիւնք, օրինակի Համար՝ Մխիթարայ Հերացւոյ Ջերմանց Մխիթարութիւն գիրքը, 1184ին գրուած (տպգր. Վենետ. 1832. — Համմտ. Հեղինակին Յառաջաբանը՝ "..առնել զգիրքս զայս ի հոռոմ եւ յարաբիկ եւ ի պարսիկ գրենաց․„ եւ յէջ 23 յիշուած արաբացի Հեղինակութիւնքը՝ "Սինայի որդին, Մա-

համատ Իպլին Զաքարիան„ եւն. —) եւ “Գիրք Վաստակոց, (հին Թրգմ. յարաբերէնէ, տպ. վենետ. 1877), որ ըստ կարծեաց Մխիթարեանց (Ցուց. էջ 15) ԺԳ դարուն Թարգմանուած է հայերէն։ Երկուքն ալ ռամիկ-հայերէնով գրուած են, եւ եթէ մանրակրկիտ քննուին՝ բազմաթիւ այլ օտար բառեր պիտի գտնուին, որոնց շատն արաբերէն է։

Ուստի յայտնի ըլլալով որ արաբերէն փոխառեալ եւ օտար բառեր միայն ռամկօրէն կամ Նոր հայերէնին մէջ կան շատ, եւ թէ ընդհակառակն հին հայերէնին մէջ ցանցառ են, եւ աւելի եւս ցանցառագոյն կ՚ըլլան՝ որչափ հնագոյն ժամանակներն ելլենք, ինքնին ուրեմն կը հասկըցուի որ ամենահին այսինքն Ե եւ Զ դարու հայ մատենագրութեան մէջ այսպիսի — ուղղակի արաբերէնէ փոխառեալ — բառեր ընդհանրապէս չեն կրնար գտնուիլ։

Իսկ ուր որ այսպիսի բառեր արդեամբք կ՚երեւայ թէ կը գտնուին, երեք կարելիութիւնք կան. 1) կա՛մ այն բառն կամ այն նախադասութիւնն՝ ուր նոյն բառը կը գտնուի, յետնամուտ յաւելուած է. — եւ այսպիսի ընդմիջարկութիւնք բաւական յաճախ են հայ մատենագրութեան մէջ. 2) կա՛մ այն գրութիւնը յետնագոյն ժամանակի է. — եւ շատ մը հայ գրութեանց՝ մանաւանդ թարգմանութեանց ժամանակին նկատմամբ տեսութիւնները կը դեդեւին՝ դարերով. 3) կա՛մ նոյն բառն ուղղակի փոխառեալ չէ, այլ ուրիշ ազգաց միջնորդու-

թեամբ Հայոց հասած (ինչպէս կրնայ եղած ըլլալ արաբական բերքերուն բառերու նկատմամբ,) եւ կամ Արաբացիք եւ Հայք նոյն բառն ուրիշ լեզուէ մ'առած են։ Այս երեք տեսակէտներէն միոյն կամ միւսոյն դատելու է յաջորդ ցուցակին մէջ սուլտան, նաֆթաթ, կատտատաալիկան, մաղաղ եւ շուլտակ բառերը։

Արաբական այս փոխառեալ բառերէն ձայնագիտութեան նկատմամբ կը տեսնուի որ յաջորդ հայերէն եւ արաբերէն հնչիւնները կամ տառերն իրարու կը համապատասխանեն։

| արաբ. | հայ. | արաբ. | հայ. | արաբ. | հայ. |
|---|---|---|---|---|---|
| ب | բ | ز | զ | ف | ֆ (փ) |
| ت | տ, թ | س | ս | ق | կ |
| ث | թ | ش | շ | ك | ք (ակնեղեւ) |
| ج | ջ | ص | ս | ل | լ |
| ح | հ | ض | դ (?) | م | մ |
| خ | խ | ط | թ | ن | ն |
| د | դ | ظ | — | ه | հ |
| ذ | զ | ع | — | و | վ |
| ر | ր, ռ | غ | խ, ղ | ى | յ |

Արաբ. a, ā, i, ī, u, ū = հայ. ա, ա, ի, ի, ու, ու (ո)։

Միտ դնելու է 1) որ արաբ ق կը տառադարձուի կ = k, զոր օր. «ակնկարհայ. բանկլայ, զիկ, կամաս, կարուրայ, կաւատ, կլայ, կլայեկ, կուռայք, մկրատ, շալակ, սնդուկ, փուրկան.» եւ 2) արաբ l կամ ll = լ եւ ոչ ղ. համմտ. «բա-

լասան, զոհալ, լուբիա, լովիաս, խալատ, կլայ, կլայեկ, մթխալ, շալակ, սալայ, պալղամ:„ Առաջինը կը ցուցընէ որ Հայերէն է նաեւ ԺԲ դարէն ետքը կոկորդական նուրբ տառի (k) յատկութիւնը պահած էր, եւ ժողովրդեան շրթանց վրայ դեռ չէր փոխուած միջակի (g), մինչ Հին-Հայերէնի պ, տ (p, t) ըստ Նոր-Հայերէնի ձայնափոխութեան արդէն փոխուած եղած էին բ, դ (b, d), իսկ Հին-Հայ. բ, դ (b, d) եղած էին պ, տ (p, t). (— անկէ է որ արաբերէն bādinjan բառն փոխառեալ Նոր-Հայերէն պատինճան գրուած է, որ սակայն badinǰan կը հնչուի. —) իսկ վերջինը կը ցուցընէ որ ղ տառն արդէն Արաբական իշխանութեան կանխագոյն ժամանակներն իւր նախկին ձայնական զօրութիւնը՝ որ էր l (= յուն.-ասոր. l) կորուսած էր, եւ արդէն յետագայ γ հնչումն առնելու ճամբուն վրան էր, ուստի եւ արաբերէն l Հայերէն ղ տառով սկսուեցաւ տառադարձել,[1] մինչ Հին ժամանակներն նոյն (յուն.-ասոր. l) տառին դիմաց միայն ղ տառը կը դրուէր Հայերէնին մէջ:

Հոս կը դնեմ արաբերէնէ փոխառեալ բառերու ցանկը:

1) Աղապ (հնչելու է azab. ռամկ. եւ յաճախ,) ամուրի. արաբ. عَزَب ʿazab, նաեւ պարսկ., տճկ. եւ քրդերէն: — Բնիկ Հայն՝ ամուրի:

---

[1] Նաեւ Հայոց պատմագիրներուն յիշած անթիւ անուանց մէջ արաբերէն l կը տեսնենք փոխուած ղ տառով. (Համմ. Աբդլմելէք՝ Ղեւ. էջ 52 եւն.) միայն Սալման կը գտնեմ Ղեւոնդայ քով (էջ 83) դեռ լ տառով գրուած, ընդհակառակն Մատթ. Ուռհայեցի՝ Սաղման (էջ 66, 71) ուստի ղ տառով:

2) Աթխար, զոր Զ. կը մեկնէ իբր = "Վաղամեռուկ (giunco odorato, անուշաբոյր կնիւն), որ կը մեկնուի արաբ. "աթխար„ (= اذخر ιδχιρ)„ եւ "թիպնի մէքքէ„ (= تبن مكه juncus odoratus, անուշաբոյր կնիւն կամ ծիլ) եւ "շախ-բէր„ (յայտնապէս = պրսկ. šāχ+bar) բացատրութեամբք: — Ուստի եւ արաբական բառի մը լոկ տառադարձութիւնն է այս բառը:

3) Ակրկարհայ. խոտ մը, πύρεθρον (Մխիթ. Հերացի՝ ԺԲ դար.) = արաբ. عاقر قرحا āqir qarḥā (pyrethrum), որ առնուած է ասորերէնէ՝ עקר קרחא ʿāqar quarḥā (Löw, Pfl. p. 298.)

4) Աճպարար. (ընթերց. ajb-arar ձեռնածու (ոսկիփորիկներու մէջ՝ ԺԲ դարէն ետքը.) արաբ عجب ʿaǰab (զարմանալիք, զարմանալի) եւ + հայ. արար (ընող:)

5) Ամիրայ. (Թովմ. Արծր. Ժ դար եւն.) արաբ. امير amīr. Համմտ. ամիր ալ մումնի. (Ղեւոնդ, տպ. Փար. 1857, էջ 19՝ Ը դար.) = امير المؤمنين

Ասկէ են՝ ամիրայական (Գր. Մագիստ. ԺԱ դար.) ամիրայապետեմ (Թովմ. Արծր.) ամիրապետ. (Ստ. Որբ. ԺԳ դար.) ամիրայացանել (Ստ. Ասող. ԺԱ դար.) ամիրամնին (Վարդան՝ ԺԳ դար.) ամիրայումնին (Մխք. Ասոր. տպ. Երուսաղ. 1870, էջ 408. ԺԳ դար:) — կամ արդեօք ամիրայ բառն է՞ = բուն ասոր. אמירא (արդէն իբր 700ին:)

6) Բաքուանէճ. (Մխ. Հերացի, էջ 69. 2),

վէն. Բաւ. Պապունիճ. (ընթերց. babunij) անթեմ, երիցուկ. արաբ. بابونج bābūnaj, պարսկ. bābūna (Löw, Aram. Pfl. p. 326.)

7) Բալասան. (Մ. Խոր. Աշխ.՝ Է դար.) արաբ. بلسان balasān, գոթ. balsan (Մարկ. ԺԴ, 4, 5 եւն = μύρον, միւռոն:) Համմտ. ապրսամ = բալսամ (տես վերը.) եւ բալսամոն, բալսամոս = βάλσαμον, βάλσαμος. (Ագաթ., Ոսկեբ., Բարս. վեցօր. Ե դար:)

Մ. Խորենացւոյ Աշխարհագրութեան այս տեղն է (ըստ Հրատ. վեննետ. 1865, էջ 612 եւ Պատկ., էջ 22) այսպէս. "Իւղք անոյշք ի նմա (այսինքն՝ յԵրջանիկն Արաբիա = Arabia felix), եւ ծաղիկք վեշտասան՝ հալէ, ջափու, մաղապ, խալուկ, քնէ, ադխունա, խալար, բուխրակ, նարդոս, բալասան, բան, յասմէկ, նարան, վարդ, մանուշակ, մարզէզուշ:" Այս խօսքն Սուքրեանի Հրատարակութեան մէջն է (վեննետ. 1881, էջ 39) այսպէս. "Խալամի, ջաբրէկ, մաղապ, խալուկ, քեդէ, հունդաշնունար, խապար, բուխրակ, նարդէն, յասմէկ, նրան, մարզեզուշ:" Այս կտորին բառերուն մեկնութիւն մը տալ փորձեց Պատկանեան (Թրգմ. էջ 56—57 Ծան.:) Մասամբ պարսկերէն են: Իսկ ինչ որ արաբերէն է, ըստ մասին պարսկական միջնորդութեամբ եկած է, կամ — հաւանականագոյնս — յետոյ մուծուած:

8) Բակլայ. (Մխիթ. Գօշ, Առակք, տպ.

վենետ. 1854, էջ 44, 45, ԺԲ դար. Տօնակ. Ը դար եւ յետոյ.) արաբ. باقلی bāqilā նաեւ պարսկ., քրդերէն, բալուչի եւն։

9) [Բուխտակ. Արաբիոյ ծաղիկ մը. (Մ. Խոր. Աշխ. տպ. Պատկ. էջ 22, 10. Վենետ. էջ 612, 26) կապ չունի արաբ. بختج buχtaj (բուսաջուր, "մուպուխ") բառին հետ, որ = նոր պրսկ. puχta, որ ծագած է պահլ. *puχtak (եփած) բառէ մը։]

10) Դուռայ. զգեստ մը. (Ներս Լամբր. ԺԲ դար. Երզնկացի՝ ԺԳ—ԺԴ դար.) արաբ. دراعه durrā'a կտաւեայ զգեստ։

Ըստ Երզնկացւոյ՝ դուռայն եւ ռէդդէն (= արաբ رداء, վերարկու) Պարսկաստանէն կու գային։

11) Զանապ (ընթերց. zanab) ագի. (ուստի զէնէպ է Թէնէն, վիշապագի, համաստեղութեան մ'անուն) զոր կը յիշէ Վարդան (ԺԳ դար.) արաբ. ذنب ðanab ագի եւ تنين tinnin վիշապ։

12) Զիլ. գործւոյ մ'ամենաբարձր լարը, վերնաձայն, (ընդհակառակն բամբ՝ ամենէն խոռունկ ձայնով լարը, ստուարաձայն) զոր կը յիշեն Երզնկացի (ԺԳ—ԺԴ դար) եւ Ոսկիփ. (ԺԲ դարէն ետքը.) = արաբացեալ պարսկ. zīr (հնագոյն zēr ներքեւ, տակը), ինչպէս նաեւ բամբ = պարսկ. bamm, արաբ. (փոխառեալ) bamm.

13) Զիկ. եզր, քղանցք (միայն Վարդան՝ ԺԳ դար.) = արաբ. زيق zīq շապկի օձիքին վերին եզրը։

14) Զոհալ. Երեւակ. = արաբ. زحل — Մուշթարի = արաբ. مشترى Լուսնթագ — Շամս = ար. شمس Արեգակն. — Մարեխ = ար. مرّيخ Հրատ. Զոհրայ = ար. زهرة Արուսեակ. — Օտարիտ = արաբ. عطارد Փայլածու, եւ Ղամար = արաբ. قمر Լուսին. այս բառերն մոլորակաց օտար անուանքն են Վարդանայ աշխարհագրութեան մէջ (ԺԴ դար.) տես St.-Martin, Mémoires, II, p. 410, 455.

Վեն. Բառ. կը յիշէ թէ ասոնք արդէն Անանիա Շիրակացւոյ (Է դար) քով կը գտնուին. բայց ես Անանիա Շիրակացւոյ գործոց Պատկանեանի հրատարակութեան մէջ (Պետրբ. 1877) չեմ գտներ։ Բայց ուր ալ գտնուին, այս բառերն լոկ գիտնական տառադարձութիւնք են արաբական անուանց։ Նոյնպէս է Թուրայա (Գիրք Վաստ. էջ 11, 4. 25, 7) = արաբ. ثريا θurayyā Բազմաստեղք (Ցուլ աստեղատան։)

15) Զունար. (Ոսկեբ ի Գործս Առաք. — Ի՞նչ ժամանակէ. ԺԱ դարէ յառաջ՝ թէ ետքը. —) յուն. ζωνάριον (գօտի,) = արաբ. պարսկ. zunnār, ասոր. זונרא, זנרא։

16) Զուրաֆէ, զուրաֆայ. ընձուղտ. (Միք. Ասոր. ԺԳ դար.) արաբ. زرافه zurāfa, ասոր. וירפא

17) Թաս. (արմ. է) խմելու աման, բաժակ (Մ. Կաղ. Ա, 185, Ժ դար. Վարդան՝ ԺԳ դար.) արաբ. طاس բաժակ. (քրդերէն ṭas, պաղ. tās),

նաեւ طس ṭass եւ طشه ṭassa, որմէ իտալ. գաղղ., գերմ. tazza, tasse, Tasse, ամէնն ալ պարսկերէն tašt (= հայ. տաշտ) բառէն:

18) [Թափուտ. (արմ. տ) դագաղ. (ըստ ՎԼԵՆ. Բառ. անգամ մը գործածուած Ստոյն-կալիսթենեայ մէջ՝ Ե դարէն.) արաբ. تابوت tābūt արկղ, դագաղ, արամերէն תֵּיבוּתָא (եբր. תֵּבָה) բառէն, վերջինս ալ եգիպտ. ṭbt բառէն (ZDMG, XLVI, 123.)

Տես Bezz. Beitr. I, 289, որուն համեմատ՝ այս սեմական բառերն "սովորական կենաց մէջ չէին գործածուեր:„ Այս բառն պարսկերէնին մէջն ալ կը գործածուէր անշուշտ, եւ անկէ Հայոց եկած:]

19) Թրմուս, կամ Տրմուզ. եգիպտական ոլոռն. (Բժշկարանք՝ ԺԴ—ԺԵ դար. Գիրք վաստ. էջ 22, 1, 2, 5. ԺԴ դար.) արաբ. ترمس turmus, յուն. θέρμος լեղի լուբիա, եգիպտոլոռն. (Löw, Aram. Pfl. p. 394.)

20) Լոպիա, լուբիա, մանրաբակլայ. (Գօշ, էջ 46, 47, ԺԲ դար.) Լուպիա (Բժշկարանք՝ ԺԴ—ԺԵ դար.) արաբ. لوبياء (արամերէն לוביא բառէն, Fränkel, p. 145), պարսկ. lūbiya, lūviyā (արաբերէնէն), յուն. λοβοί.

21) [Խաբ, խաբել. (Հին եւ սովորական բառ.) ըստ ձեւին եւ նշանակութեան կը յարմարի հին-արաբ خب բառին, բայց փոխառութիւն մ'ենթադրել հոս անհնար է: Ուստի նմանութիւնը լոկ պատահական է:]

22) խալաթ. „arab. = sbaglio.“ (սխալանք.) որմէ խալթել կամ ղալթել, սխալել (Ներս. Լամբր. ԺԲ դար.) արաբ. غلط γalaṭ:

23) խումար. տխուր. (Ոսկեփորիկ՝ ԺԲ դարէն ետքը.) խումարութիւն, տխրութիւն. արաբ. خمار χumār դառնութիւն, տաղտուկ:

24) կումաշ. զգեստ. մաշէկամաշ, այծեայ զգեստ. (Վարք Հարանց, այլեւայլ դարուց գործ.) չէ = արաբ. qumāš իրեր, նիւթ, այլ մանաւանդ = արաբ. قميص qamīṣ ներքնակ, լատ. camisia.

25) կարուրայ. (արմ. է.) միզաւառ, (Մխիթ. Հերացի, ԺԲ դար.) արաբ. قاروراء qārūra միզաման

26) կավատ. միջնորդ բոզի. (Ներս. Շնորհ. եւ Լամբր. ԺԲ դար.) արաբ. قوّاد qavvād: Ասկէ կավատութիւն, որ ըստ. Վեն. Բառ. կը գտնուի Ոսկեբ. Մեկն. Մատթ. (տպ. Վենետ. 1826), Բ, էջ 569, 12 (Ե դարէն՞:)

Այս տեղն է՝ “Եւ այնչափ կավատութեան բանս եւ գործս անամօթութեան գործեն.„ բայց յոյն բնագրին մէջ. (տես Joh. Chrysost. ed. Migne, Vol. VII, Pars, I, p. 426. 13 տ.) այսպէս է. τοσαύτην μελέτην ἀναισχυντίας ποιούμεναι (այնչափ բանս անամօթութեան գործեն.) ուստի կավատութիւն բառին դիմացը բան մը չկայ բնագրին մէջ: Բաց աստի այստեղ կանանց լրբութեան եւ անամօթութեան վրայ է խօսքն, բայց ոչ երբեք՝ կաւատութեան:

Ուստի այս բառն կամ յետոյ մուծուած է հոս, կամ այլազգ պէտք է կարդալ։

27) Կլայ. բերդ. (Ներս. Շնորհ., Մաթ. Ուռհ. ԺԲ դար. Վրաց պատմ. ԺԲ կամ ԺԳ դար.) արաբ. قلعة qalʿa, պալուչի՝ kilat, ոսեթ. qalle, χale եւն։ Անկէ Հռոմկլայ (բերդ Հռոմոց = արաբ. qalʿat arrum, տճկ. Rūm qalʿesi. Գարիէրի հրատարակած 1293էն եղած սրբարանին վրայ (Carrière, Reliqaire arm. p. 22.) "Հռոմկլայ" եւ շրջաբանութեամբ՝ "կլայ հռոմայական։"

28) Կլայեկ. կլայեակ. անագ. (Մխ. Այրիվ. ԺԳ դար.) արաբ. قلعی qalʿī, տճկ. qalai, պալ. kalūī, ոսեթ. kala եւն։

29) Կուռայք. (սեռ. կուռայից.) ընթերցողք կուրանի (Ղեւոնդ, էջ 146, 9, 15. Ը դար.) Ստեփ. Ասող. տպ. Փար. 1859, էջ 133, 1վ. (ԺԱ դար.) արաբ. قراء qurrā (յոգ. قارئ բառին։)

30) Հէջուպ կամ հէճուպ. սենեկապան. (Վարդան, ԺԳ դար. Ալիշան Հ. Ղ, Շիրակ, տպ. Վենետ. 1881, էջ 17, 20, 22.) արաբ. حاجب ḥājib (ḥējib.)

31) Հէսար. պաշարումն. (Մաղաք. աբեղայ, ԺԳ դար.) կամ խսար (Վարդան, էջ 114, 4վ.) խսարել, պաշարել. (Թովմ. Մեծոփ. տպ. Փար. 1860, էջ 14, 72.) արաբ. حصار ḥīṣār պաշարում։

32) Հունադքունար. այլ օր. ջհունադքունար, ողխունա, ողկունա. (Մ. Խոր. Աշխ. տպ. Վենետ.

էջ 612, 25. տես վերը՝ թ. 7.) արաբ. دهن الحناء duhn al ḥinnā հենայի իւղ:

33) Մահր. (սեռ. մահրէ.) վարձանք, էրկան՝ ամուսնութեան դաշամբք կնոջ տուած ինչք. (Մխ. Դատաստանագիրք, ԺԲ դար. բուն հայերէն՝ տուայր.) արաբ. mahr, ասոր. mahrā.

Կնոջ բերած օժիտը կը կոչուի՝ պռոյք (սեռ. պռոյգայ) = յուն. προίξ.

34) [Մալապ, արաբական իւղ կամ բոյս մը. արաբ. ملاب malāb, յուն. μαλόβαθρον, լատ. malobathrum. սանկս. tamālapattra (= Տամալայի տերեւ:) (°):

Շատ տարակուսական է: Այս բառը կը գտնուի միայն ի Խոր. Աշխ. տպ. Պատկ. էջ 22, 9, տպ. Վենետ. էջ 612, 25, իսկ Սուքրեան մալապ կ'ընթեռնու: Արաբերէն malabի դիմաց հնագոյն հայերէնին մէջ մալաբ կը սպասուէր որ ըլլայ, ԺԲ դարուն՝ մալապ: Տես վերը՝ թիւ 7:]

35) Մամբար. բեմ, ամպիոն. (Գր. Տղայ, Ողբ ի վերայ առման Երուսաղէմի՝ յամի 1187.) արաբ. منبر minbar.

36) Մայտան. ձիարշաւարան (Վարք Հարանց, Ոսկեբ. մեկն. ի գործս Առաք., յառաջ թէ յետոյ քան ԺԱ դար.) արաբ. ميدان maidān.

37) Մանշուր. մուրհակ, վկայագիր. (Ստեփ. Ուռպ. տպ. Փար. 1859, Բ, էջ 138. ԺԳ դար.) արաբ. منشور manšur մուրհակ, վկայական:

38) Մաշարայ. ածու պարտիզի. (Գիրք

Վաստ., ԺԳ դար.) արաբ. مشاره mašāra (տես Fränkel, p. 129.)

39) Մզգէթ, (նաեւ մզկիթ, մզգիթ.) մահմետականաց աղօթատուն. (Ներս. Շնորհ. ԺԲ դար. Մատթ. Ուռհ. ԺԲ դար. Մխք. Ասոր. տպ. Երուսաղ. 1870, էջ 405, 475, ԺԳ դար եւն.) արաբ. مسجد masjid.

Հայերէնի ձեւոյն ամէնէն նմանն է պրս. mazgīt, (Nöldeke, Pers. Stud. II. 37.) Համմ. նաեւ ասոր. masgęδā, mazgęδā.

40) Մըսխալ. (միսղալ.) ծանրութեան չափ. (Վարք Հարանց, Գիրք Վաստ. ԺԳ դար.) արաբ. مثقال miϑqāl չափ $1^1/_2$ տրամի, ոսկեդրամ եւն: — Տես նաեւ Անանիա Շիրակ. տպ. Պատկան. էջ 29, ծան. 2:

41) Մկրատ. (ընթերցիր mkrad?) գործ. -ատ. (Վկայաբ. եւ գանձ. ԺԲ դարէն ետքը.) արաբ. مقراض miqrāδ.

42) Յունապ, (ընթերցիր hunab.) Մ. Գոշ, ԺԲ դար, էջ 19 յունապի. Վարք Հարանց, Բժշկարանք՝ ԺԳ—ԺԵ դար.) արաբ. عناب զուսպ, (հիւննապ):

43. Նալ, պայտ. (Վարդան, ԺԳ դար.) արաբ. نعل naʿl.

44) Նաշ. դագաղ. (Մաշտոց՝ մինչեւ ԺԲ կամ ԺԳ դար. Վկայաբ. եւ գանձ., Ոսկիփ. ԺԲ դարէն ետքը.) արաբ. نعش naʿš.

45) Նոպայ. (ընթերցիր noba, գրծ. նոպայով.) շրջան, կանոնաւոր դարձ (ջերման,)

(Մխիթ. Հերացի, էջ 95 եւն., ԺԲ դար.) արաբ. نوبه nauba, Նոր nōba.

46) Նուսխայ. որմէ Նուսխայէն, "օրինակ, կանոն" (Գր. Նարեկ. Ժ դար. Ներս. Շնորհ. ԺԲ. դար.) դեղագիր. (Հմմտ. Յաւելուածն Մխ. Հերացւոյ գրոց, տպ. Վենետ. 1832, էջ 144.) արաբ. نسخه nusχa.

47) Շալակ. (արմ. է-ա.) պարկ. (Գիր. Վաստ. ԺԳ դար. Երզնկացի՝ ԺԳ—ԺԴ դարք Մարթին լեհ. ԺԴ դար.) արաբ. شلاق šallāq պարկ խոտոյ (կամ վարսակի), մախաղ մուրալու։

Այս բառն նաեւ Դ. Թագ. Դ, 39 եւ Բ. Մակ. Թ. 8 ալ կը գործածուի, ուր յոյնն է ἱμάτιον (ձորձ, զգեստ) եւ φορεῖον (պատգարակ։) Արդեօք այստեղ ուրի՞շ բառ մըն է։ Ջախջախեան այս նշանակութիւնքը կուտայ բառիս՝ ուս, թիկունք. պարկ. բառնալիք. իսկ շալակել բային համար՝ ուսին վրայ առնուլ, կրել։ Եթէ բառս արդէն հին կտակարանի մէջ կը գործածուի, պէտք է որ արամերէնէ կամ պարսկերէնէ առնուած ըլլայ։ Հմմտ. Fränkel, p. 82 որ կ'ենթադրէ թէ արաբերէն šallāq օտար ծագում ունի։

48) Շամամ. փոքր՝ անուշահոտ սեխ. (Մխ. Գոշ, էջ 58, ԺԲ դար.) արաբ. شمام šammām.

49) Շարաբ, Շարապ. մրգահիւթ, օշարակ. (Բժշկարանք՝ ԺԳ—ԺԵ դար. Ներս. Շնորհ. ԺԲ դար. Վարդան, ԺԳ դար.) արաբ. شراب

šarāb. Նաեւ Նոր-պարսկ., քրդերէն, աֆղ. եւ պալ.:

50) ՇՈՒՄՐԱՅ. վայրի հոռոմ սամիթ. (Վեն. Բառ. չունի այս բառն, այլ միայն Ջախ.) արաբ. شمره šumra, ասոր. šumrā (Երկրաչափաստակք, հրտ. Լակարտ.) եւ šamrā.

51) ՇԱՊ (ծագած շէպ-ձեւէ) Շպլէղ բառին մէջ, այլ օր. ՇԱՊԼԷՂ. (Ոսկիփ. ԺԲ դարէն եաքը.) պաղլեղ. պարսկ. արաբ. شب šab պաղլեղ:

Շէպին նկատմամբ տես Վեն. Բառ. ՊԱՂԼԷՂ բառին տակ:

52) [ՈՂԿՈՅԶ. (արմ. է-ա.) (Երգ Երգոց Ա, 13. Ցայտն. ԺԴ, 13. Եփրեմ, Փիլոն եւն.) ըստ հնչման չի յարմարիր արաբ. عنقود ʿanqūd ողկոյզ բառին:]

53) ՊԱԼՂԱՄ. (ընթերց. balγam) (Մխիթ. Հեր. էջ 80 եւն. ԺԲ դար.) արաբ. بلغم balγam = φλέγμα.

54) ՊԱՏԻՆՃԱՆ. (ընթերց. badinjan, badęn-jan.) մոլախնձոր, սմբուկ, տձկ. "Բադլըճան." (Բժշկարանք՝ ԺԳ—ԺԵ դար. Վարդան, ԺԳ դար. Մխ. Հերացի, ԺԲ դար.) արաբ. պարսկ. տձկ. بادنجان bādinjan „solanum melongena“ (Löw, Aram. Pfl. p. 188.)

54 b[1]) ՊԱՔԱՐԱՅՔ. ՅՔ. (ընթերց. ba...)

---

[1] Այս բառն հեղինակը շփոթմամբ թիւ 9ին մէջ դրած է, եւ չուզելով կարգը շփոթել՝ յաջորդ բռնխ-տակ բառն՝ թիւ 9a նշանակած է, դնելով ծանօթութեան մէջ թէ Թ. 54 եւ 55 բառերուն մէջ պիտի զետեղուի (էջ 259, ծան. 1:) Մենք ուղղելով այս շփո-

գրաստք, արջառք. (Ներս. Լամբր. ԺԲ դար.) արաբ. بقرة baqara արջառ, ասոր. baqrā հօտ, եբր. bāqār արջառ, Նախիր արջառոց։

55) Պրքէ. (ընթերց. brkä.) աւազան. (Գիրք Վաստ. ԺԳ դար.) արաբ. برکه birka.

56) Ջուապ. (ընթերց. ǰuab.) պատասխան. (Երզնկ. այբուբ.) արաբ. جواب ǰavāb.

57) Ռահան. (ռմկ. ռեհան, ռէհան, ռեյհան) (Տօնաց., այլեւայլ ժամանակներէ.) արաբ. ريحان raiḥān, rēḥān.

58) Ռայ. դրօշ, նշան, (Գրիգ. Տղայ՝ ԺԲ դար. Ոսկեբ. Մեկն. Եսայ. եւ Ա. Տիմ. 8, տպ. Վենետ. 1862, Ա. էջ 66, 24.) արաբ. راية rāya դրօշ։

Չի կրնար սպասուիլ որ արաբերէն փոխառեալ բառ մը գտնուի Ոսկեբերանի Մեկն. Ես. եւ Պաւղոսի Թղթոց մէջ, որ Ե դարու թարգմանուած կ՚ըսուին։ Այս տեղն է. "Ընդէն զարդուցն ռայ եւ ժամանակ մենթանաց (°), անդ սեթեւեթեալ եւ անդէն պերեւեթեալ." բայց այս ամենեւին չի գտնուիր յունարէնին մէջ։ Այս կտորն լուսանցքի գրութիւն կամ դիտողութիւն մըն է նախընթաց նախադասութեանս՝ "անդ հանդերձքն պաճուճեալք" = յուն. ἐχεῖ τὰ πολυτελῆ ἱμάτια. Եւ այս լուսացագրութիւնն հինգերո՞րդ դարուն է։

---

Թութիւնը՝ Թ. 54b կը նշանակենք, որպէս զի յաջորդ թուերու կարգը չխառնակի։ Ծ. ԹՐԳՄ.

59) Ռատինէճ. (ընթերց. radinäǰ.) խէժ, ռետին. (Գիրք Վաստ. ԺԳ դար.) արաբ. راتينج rātīnaǰ, որ յունարէն ῥητίνη = Հայ. ռետին (Հին կտ.) բառէն առնուած է։

60) [Ռումբ. Նիզակ (Մատթ. Ուռհ. ԺԲ դարու.) չէ յարմարիր ըստ Հնչման արաբ. رمح rumḥ, արամ. rumḥā բառին։

Համմտ. ռմբաւոր δορυφόρος Նիզակաւոր. (Ոսկեբ. Մեկն. Յովհ. Բ. Ե դար.) եւ ռմբաձիգ πετροβόλος քարնետելու գործիքն ու նետուելու քար. (Եզեկ. ԺԳ. 11, 13։)]

61) Ռուպ. (ընթերց. rub) քառորդ մասն. (Բարսեղ Մաշկ. ԺԴ դար.) արաբ. ربع rubʿ.

62) Ռուբ, ռուպ. (ընթերց. rub) Թանձրեփ քաղցու, օշարակ. (Գիրք Վաստ. ԺԳ դար. Բժշկարանք՝ ԺԳ—ԺԵ դար.) արաբ. رب rubb.

63) Սալայ. կողով. (Ոսկիփ. ԺԲ դարէն ետքը.) արաբ. سله salla, ասոր. סלא sallā, եբր. סל։

64) Սակր. (Համմտ. Մխ. Գոշ՝ ԺԲ դար. Առակք, էջ 102։ "Սակր եւ Հողամաղ (= Հողբադ) խոստովան եղեն, թէ որսացաք մկունս եւ գորտունս եւ կերաք.") արաբ. صقر ṣaqr բազէ։ Համմտ. միջին-լատ. sacer, իտալ. sagro, գաղղ. sacre, միջին-բարձր-գերմ. sackers, միջին-յուն. σάκρε, քրդերէն sakkar եւն, զորոնք կը յիշէ Hehn, Kulturpfl. III, p. 537. Հայերէնին մէջ սովորաբար Բազէ եւ Շահէն (պարսկ.) կը գործածուին։

Իսկ Սոփոն. Բ. 14 ագռաւ ընթերցուածն՝ պէտք է ագռաւ կարդալ, ինչպէս ունի յոյնը՝ κόρακες.

65) Սաբր. (ընթերց. sabr) հալուէի դառն հիւթը. (Գիրք վաստ. ԺԳ դար. Բժշկարանք՝ ԺԳ—ԺԵ դար. Ոսկիփ. ԺԲ դարէն ետքը.) արաբ. صبر sabr հալուէի հիւթ. (Löw, Aram. Pfl. p. 426.)

66) Սադապ. (ընթերց. sadab.) (Գիրք վաստ. ԺԳ դար.) ռամկօրէն բառ փեգենայի (Ղուկ. ԺԱ. 42 = πήγανον.) արաբ. سذاب saδāb (կայ նաեւ sadāb) պարսկ. sadāb (Vullers սխալմամբ sudāb կը գրէ) կամ sazāb.

67) Սարատան. կենդանակերպ խեցգետնի. (օտար բառ առ Երզնկացւոյ՝ ԺԳ—ԺԴ դար.) արաբ. سرطان saraṭān, ասոր. סרטנא sārṭānā.

68) Սաֆրայ. լեղի. (Բժշկ. ԺԳ—ԺԵ դար. Ոսկիփ. ԺԲ դարէն ետքը. արաբ. صفرا ṣafrā.

69) Սնդուկ. արկղիկ. (Մ. Կաղ. Ժ դար. Միք. Ասորի. Գիրք վաստ. ԺԳ դար. եւն.) արաբ. صندوق ṣandūq, աւելի լաւ՝ ṣundūq, հմմտ. ռուս. sunduků, թաթար. sandęk, քարէլ. sunduga (տես Ahlqvist, Kulturwörter, 115.) Նաեւ պալքանեան լեզուաց մէջ մտած է բառս. տես Miklosich, Türk. Elem. II, p. 50.

70) Սորնջան. (միայն Ջալ. կը յիշէ.) բոյս, ձիւնածաղկի տակ (hermodactylus), արաբ. سورنجان sūrinjān. (Löw, Aram. Pfl. p. 174.)

71) Փուրկան. կուրան. (Ղեւոնդ, էջ 83, 10) արաբ. فرقان furqān.

72) Քաքում. (միայն Ջախ. կը յիշէ.) սպիտակ աքիս. արաբ. պարսկ. տճկ. قاقم qāqum, քրդերէն՝ kak'um (Justi, Gram. 68.) պահլ. قاقم (Justi, Bundeh. Wörterb. 199).

Հմմտ. Բուզանդ, էջ 263 Կնգմնի (սպիտակ աքիսի մորթէ մուշտակ.) որ կը ծագի *Կնգում (սպիտակ աքիս. գղ. hermine) բառէ, (արդեօք փոխանակ Կագո՞ւմ բառի մը:) Այս դէպքիս մէջ արաբերէնէ փոխառեալ չի կրնար ըլլալ:

73) Քմին. դարան, (Մատթ. Ուռհ. ԺԲ դար.) արաբ. كمين kamīn.

74) Քումայթ. կարմրագորշ. (Գիրք Վաստ. ԺԳ դար.) արաբ. كميت kumait.

75) Քուրաթ. (Կուրաթ.) սխտոր. (Գիրք Վաստ. ԺԳ դար. Բժշկարանք՝ ԺԳ—ԺԵ դար.) արաբ. كراث kurrāϑ, ասոր. kurrāϑā (Löw, Aram. Pfl. 226.)

Հին հայերէն բ, դ (b, d) հնչմանց պ, տ (p, t) եւ հին հայ պ, տ (p, t) հնչմանց բ, դ (b, d) այլափոխուելուն նկատմամբ միտ դնելու է որ այս երեւոյթը կը տեսնուի նոր փոխառութեանց վրայ. իսկ հին ժամանակ փոխառեալ բառերուն եւ անուանց մէջ պատմական ուղղագրութիւնը կը պահուի՝ նաեւ երբ հնչումն արդէն փոխուած էր: Այնպէս որ երբ ԺԲ կամ ԺԳ դարուց մատենագիր մը պատմական ուղղագրութեան կը հետեւի, կը գրէ Abu-Bekr անունը Ղեւոնդայ հետ (էջ 19) "Աբուբաքր" կամ "Բուբաքր" (Վարդան, էջ 68,) մինչդեռ

եթէ իւր հնչման հետեւէր՝ պիտի գրէր "Բու-պագր"[1] (Միք. Ասոր. էջ 391, զոր կարդալու է bubak'r.) Հմմտ. Ալատին փխ. Ալադին, Զապէլ փխ. Զաբէլ = Isabelle (Վարդան, էջ 144, 141, Միք. Ասոր. 515.) Սալահատին, Սէֆէտին, փխ. Սալահադին, Սէֆէդին (Միք. Աս. 476 եւն.) Պալտուին փխ. Պալդուին Balduin (Վարդան, 110 եւն. Միք. Ասոր. 445.) Պերտրան փխ. Բերդրան = Bertran (Վարդան, 114, 115.) Բրինց, Բրինծ = Prinz (Միք. Ասոր. 492, 514, 524) եւն: Ի հարկէ ոչ ամէն տեղ՝ ուր տ դրուած է փխ. դ եւն, կրնանք ձայնափոխութիւն մ'ենթադրել. տաց ի բազմաթիւ տառասխալներէն եւ աւանդման կամայականութիւններէն եւ ձայնական դրութեան տարբերութենէն,[2] հայերէնն օտար բառեր առնելու ժամանակ քիչ մ'ալ ազատ կը շարժի: Այսպէս արդէն Հին ու Նոր կտակարանի մէջ եւ յետոյ միշտ՝ Դաւիթ կը գրուի փոխանակ Դաւիդ (David.) Նոյնպէս արդէն Սեբէոս կը գրէ եւ յետոյ ալ միշտ՝ Մահմէտ փխ. Մուհամմէդ (Muhammed.) — Ղեւոնդ (էջ 54, 149) Valid անունը կը գրէ Վլիթ. Թովմ. Արծրունի՝

---

[1] Կիրակոս (էջ 34) հետեւաբար Ապուպաքր կը գրէ. Միտ դնելու արժանի է որ անուանց մէջ արաբ. Abu- բառին դիմաց Թովմ. Մեծոփեցւոյ քով միշտ Ապու- կը տեսնուի. միայն անգամ մը՝ Աբուբաքար (էջ 103), ինչպէս ունի նաեւ Ղեւոնդ, (էջ 83). մինչդեռ Վարդան՝ Աբու- կը գրէ: Արդէն 1034 տարիէն եղած արձանագրութեան մը մէջ (Brosset, Ruines d'Ani, I, 20) գրուած է Ապլղարիպ փոխանակ Աբլղարիբ (Ablγarib):

[2] Հայերէնն արաբերէնի քանի մը հնչիւնները չի կրնար ներկայացնել, քանի մը հատն ալ՝ անկատար կերպով. (այսպէս ϑ, f հագագաւորներն ß, ֆ թաւերով:)

զAhmad կը գրէ Ահմադ եւն։ Նոյնը կը տեսնենք նաեւ այլ բառերու մէջ, ինչպէս՝ կաւադ = արաբ. qavvād։ Այս բառը կրնայ Նոր-Հայերէն ըլլալ եւ այն ատեն կարդալու է զայն՝ kavad, բայց կրնայ նաեւ ձայնափոխութեան ժամանակէն յառաջ փոխառեալ ըլլալ, եւ այս դէպքին մէջ իւր վերջնավանկի դ տառը փխ. տ տառին այնպէս մնած ըլլալու է՝ ինչպէս "Մահմէդ" եւ "Ահմադ" անուանց մէջ։





Բ.

# ՅՈՒՆԱԿԱՆ ՓՈԽԱՌԵԱԼ ԲԱՌԵՐ

## ՀԱՅԵՐԷՆԻՆ ՄԷՋ

ԳՐԵՑ

## Կ. ՊՐՈՔԷԼՄԱՆ



## Ա Զ Դ

*Յաջորդ հատուածն իբրեւ շարունակութիւն լոյս տեսած է ծանօթ հայագէտ Հիւպշմանի "Սեմական փոխառեալ բառեր հայերէնին մէջ„ գրութեան, զոր թարգմանութեամբ ծանօթացուցինք մեր ընթերցողաց: Այժմ այս նորագոյն հատուածն՝ որ յունարէնէ հայերէնի մէջ մտած բազմաթիւ բառերը կը քննէ, լոյս տեսած է ուրիշ նոր հայագիտի մը՝ Կ. Պրոքէլմանի* (C. Brockelmann)՝ *գրչէն, որ աշակերտած է Հիւպշման հայագիտին եւ անոր յորդորանօք գրած այս քննութիւնը: Քննութիւնս լոյս տեսած է Հալլէի Գերմանական Արեւելագիտական թերթին մէջ.* (C. Brockelmann, Die griechischen Fremdwörter im Armenischen: ZDMG, XLVII **1893**, Heft I, pp. **1—42.**) *Ինչպէս Հիւպշմանի ընտիր գործը, հարկ կը համարինք վերջինս ալ ծանօթացընել ընթերցողաց, թէեւ վերջինս բոլորովին ուրիշ ոճով յօրինուած ըլլայ առաջինէն եւ չունենայ լիովին բաղձացեալ կատարելութիւնը եւ թէեւ ինչ ինչ անճշդութիւններ զտնուին: Սակայն զոնէ մեր լեզուին մէջ մտած օտար անթիւ բառերու մեծ խումբ մը քննուած ու որոշուած կ'ըլլայ:*

Հ. Յ. Տ.

## ՅՈՒՆԱԿԱՆ ՓՈԽԱՌԵԱԼ ԲԱՌԵՐ ՀԱՅԵՐԷՆԻՆ ՄԷՋ

Հայկական մատենագրութիւնն իւր առաջին քայլերէն իսկ սկսեալ շատ սաստիկ կերպով յունական կրթութեան ազդեցութեան ենթարկեալ եղած է ։ Գրեթէ ամէն մատենագրաց գործքերն՝ զորոնք յոյն կղերը յարգի կը համարէր, հետ զհետէ թարգմանուեցան հայերէնի, եւ ազգային մատենագրաց մեծագոյն մասն առաւել կամ նուազ այս օրինակաց համեմատ յարդարած է իրեն գրութեան ոճը ։ Զարմանալի չէ ուրեմն որ Հայք յունական գաղափարաց հետ բազմաթիւ յունարէն բառեր ալ առած ըլլան իրենց լեզուին մէջ ։ Ի հարկէ խորին քննութիւն մը կը ցուցընէ որ հայերէն բառագրոց մէջ յունական մասունք այնպէս բազմաթիւ չեն բնաւ՝ ինչպէս պարսկականքն են ։ Վասն զի յունական անձուկ շրջանի մը համար սահմանափակեալ մնացած են, մինչդեռ վերջինք (պարսկական բառերն) ամէն կրթեալ անձանց հասարակ էին ։

Առաջին անգամ Շրէօդէր (J. J. Schroeder) հայերէնի մէջ գտնուած յունարէն բառերուն ուշադրութիւն դարձուց ։ Իրեն "Գանձ հայերէն լեզուի„ (Thesaurus etc.) գրութեան սկիզբն եղող ներածութեան մէջ (էջ 47, Թիւ Զ) յունարէնէ փոխառեալ քսան բառերու ցուցակը դրած է. որոնց մէջ կը գտնենք նաեւ վեց բնիկ հայ բառեր ալ՝ ինչպէս Երէց, զոր յունարէն ἱερεύς էն յառաջ բերել կ'ուզէր ։

Շատ աւելի հարուստ չէ Փր. Միւլլէրի համեմատութիւնն, (SBWA, vol. XLI, p. 10.) նաեւ այս տակաւին շատ անքննադատ է յունարէն

ստուգաբանութեանց մէջ, ինչպէս՝ օրինակի
մար՝ որոտ (որոտումն) բառն յուն. βροντὴ
առնուած կը դնէ: Զինքը սայթաքեցընողն
է անշուշտ « տառին Նոր-Հայկական Կ= Հն
սակայն յիշեալ բառն արդէն Եղիշէ եւ Ագաթ
ղոս կը գործածեն, եւ նաեւ դեռ եւս ԺԳ. դ
Վարդան βόνασας բառը բոնասոս կը տառադ
Իրեն ի մէջ բերած մելամաղձ բառն՝ որ ըստ
μελαγχωλίαէն թարգմանուած է, չկրցայ նշա
յաջորդ ցուցակիս մէջ, վասն զի այս բառը
իմ աղբիւրներուս մէջ՝ ինչպէս եւ ոչ Լա
(Studien, § 1475.)

Վենետկոյ Մխիթարեանց մեծ բառ
(W) մինչեւ իւր ժամանակը Հայերէն բնագիրն
ծանօթ ամէն յունարէն բառերը նշանակած
սակաւ բացառութեամբ՝ ուղիղը գտած: Մեր
ջորդումս հետազօտած ատաղձին հիմնական
անկէ է:

Լակարտ իւր "Հայկական Ուսումնաս
թեանց" մէջ միայն այն յունարէն բառերը
նակած է, որոնց վրայ Փր. Միւլլէր եւ այլք
խօսած էին, կամ որոնք բառագրքին մէջ բառ
ականի մեկնուած չէին. իւր գործքն այս ու
թեամբ աւելի եւս ընդարձակելն որոշակի կը
յէջն 121, եւ այն՝ անշուշտ իրաւամբք իւր
ինքն ստուգաբանական տեսակիտէն: Սակայն
բառերու քննութեան բուն կարեւոր շահեկ
թիւնն յայտնի է որ ոչ թէ այս կամ այն բ
ծագումը քննելու վրայ է, այլ ճանչնալու
ինչ ազդեցութիւն ըրած է բառը յօրինող
ղայն փոխ առնող ազգին վրայ: Իսկ այս բան
նանք իմանալ ոչ թէ քանի մը բառերը կշռ
տելով, այլ միայն ըստ կարելւոյն լիակատար
ձի մը վրայ ամբողջական հայեցուածք մ'արձակ
Բայց այն առեն պէտք է զանազանել այն
ռեալ բառերն որ արդեամբք լեզուին մէջ

են, այն փոխառութիւններէն՝ որ յատուկ են ինչ ինչ մատենագրաց գիտնական նկարագրաւ, եւ այն բառերէն՝ զորոնք թարգմանիչք իրենց բնագիրներէն առած գործածած են կամ լաւ չհասկընալով եւ կամ ազգային բառ մը չգտնելով։

Բայց այս մեր բուն նպատակէն դեռ չձեռնարկած, պէտք ենք հոս խօսիլ քանի մը բառերու վրայ՝ որոնք դիւրաւ կրնան կասկածի ենթարկուիլ թէ մի գուցէ յունական ծագում ունենան, բայց զորոնք ի մերձուստ քննելով՝ կը ստիպուինք ուրիշ աղբիւրներէ յառաջ եկած դնել, որոցմէ թէ Հայք եւ թէ Յոյնք առած են ի միասին։

1. Բեհեզ. (Ղուկ. ԺԶ, 19. Մ. Խոր. եւն.) βύσσος, եբր. արամ. בוץ արաբ. بز. Այս բառն նիւթին հետ Հնդկաստանէն կամ Եգիպտոսէն սերած ըլլալու է. սակայն՝ որչափ ինձ ծանօթ է՝ դեռ եւս ցուցուած չէ թէ այնտեղ գոյութիւն ունեցած ըլլայ։

2. Բուրգն, սեռ. բրգան. (Ա Մակ. ԺԶ, 10. Մ. Խոր. եւն.) πύργος եւ ասկէ արաբ. برج (Lagarde, St. § 427.) չի կրնար բառասկզբան պատճառաւ յունարէնէն ծագած ըլլալ. Հմմտ. Mémoires de la société linguistique, VII (1892), p. 404 ff.

3. Իւղ եւ Եւղ. (որ Ես. ԺԵ, 22 "կարագ, իմաստով գործածուած է, եւ Ելք, Լ, 25, Ղուկ. Ե, 56 եւն իբրեւ "օծանելիք.") արդէն ձայնական պատճառներով չի կրնար ἔλαιον բառէն ծագած ըլլալ. (ուստի՞ է երկբարբառը.) այլ պէտք ենք Լակարտի հետ (Gött. Nachrichten, 1886, p. 132ff) նախնաբար Փռիւգիական բառ մը համարիլ, զոր թէ Հայք եւ թէ Յոյնք փոխ առած են։

4. Մետաքս. (Ագաթ., Ոսկեբ., ածանցեալ մը նաեւ Մ. Խորենացւոյ քով.) յունարէն μέταξα, արաբ. دمقس եւ (ըստ Kâmûs, Gawâlîki Mu-

ʻarrab, p. 68, 2) նաեւ مدقس. Յունարէն փոխառեալ ըլլալուն դէմ է այն որ այս բառն յունարէնին մէջ բաւական ցանցառ, իսկ Հայերէնին մէջ շատ յաճախ գործածուած է: Պէտք է Լակարտի (St. § 1481) վճիռն ընդունիլ թէ այս բառին ծագումն միայն մետաքսագործութեան պատմութիւնը կրնայ լուսաւորել:

5. Փանդիռն. πανδούριον, ռուս. fandur; նաեւ սլաւերէնի մէջ մտած. (Հմմտ. Miklosich, die Fremdwörter in den slavischen Sprachen, Denkschriften der W. A. ph. Cl. Bd. XVI, p. 76.) Նաեւ Յունաց քով միշտ մնացած էր այն ծանօթութիւնը թէ բառս Փոքր Ասիայէն է. (Հմմտ. Lagarde, Ges. Abh. p. 274, n. 39.)

6. Օշինդր. ἀψίνθιον: երկուքն ալ պոնտական բառէ մը սերած են, ինչպէս տեսած է Լակարտ. (Ges. Abh. p. 214, 10)

7. Տատրակ, τρυγὼν (Երեմ. Ը, 7. Թովմ. Արծր. Փիլոն եւն.) համեմատած է Լակարտ (Ges. Abh. 227, 26) յունարէն τέτραξի հետ. (տես Bugge, ZVS. XXXII, 70.) Բայց վերջինս կը նշանակէ՝ ինչպէս նաեւ հիւսիսային եւրոպական լեզուաց մէջ իրեն ազգակից բառերը՝ մեծ հաւանման թռչուն մը: Curtius կը հաստատէ բառիս τετράζειν (հաւու կականել) բառէն յառաջ եկած ըլլալը, զոր արդէն ակնարկած էր Աղեքսանդր Միւնտիոս առ Աթենէոսի (Թ. 58. ed. Kaibel, II, 368. 19ff.) Ընդհակառակն Hehn (III, p. 321) կ'ընդունի թէ բառը թռչնոյ հետ Ասիայէն եկած ըլլայ: Հայերէն բառը յունարէնէն չի կրնար ըլլալ, վասն զի այն ատեն անմեկնելի կը մնար նշանակութեան տարբերութիւնը: Ուստի միայն կը մնայ ընդունիլ թէ Հայք նախալեզուի վերաբերող բառ մը յետոյ փոքրիկ թռչնոյն սեպհականած ըլլան, որ նախնականին նշանակած մեծագունին հետ միեւնոյն ձայն ունենար:

8. Մոր եւ մորի, մորէ, մորենի եւ մորմ, ածանցմանց պէսպիսութեան պատճառաւ չի կրնար յունարէն μορέα բառէն ծագիլ (Lagarde, St. § 1520), այլ մանաւանդ թէ անոր ասիական սկզբնական-բառին ազգակից ըլլալու է։

Վերջապէս պէտք ենք յիշել ուրիշ երեք բառ ալ, զորոնք յունական կը համարին, բայց որոնց նկատմամբ կրնանք միայն ըսել թէ ստուգիւ յունարէն չեն։

1. Արքայ. չի կրնար, ինչպէս Շրէօտէր եւ այլք (Lagarde, § 287) կը կարծեն, յուն. ἄρχωνէն ըլլալ, վասն զի վերջաւորութիւնն անըմբռնելի կը մնար, թողլով նաեւ իրական պատճառները. այս տեղ կրնար միայն՝ ἀρχαὶ բառն համեմատուիլ (համմտ. Մեքենայ μεχανὴ բառէն), եթէ այս բառը յունարէնին մէջ թագաւոր երբեք նշանակած ըլլար։ Եթէ Հայք այս գաղափարին համար յունարէնէ բառ առնուլ պէտք ունէին, որ շատ անհաւանական է, այն ատեն անշուշտ Յաջորդաց եւ կայսերաց βασιλεὺς տիտղոսն առած կ'ըլլային։

2. Փաղէրութիւն (սպիտակութիւն՝ առ Ոսկեբ.) W (Վենետ. Բուգր.) յունարէն φάλης, φάλλος բառէն յառաջ կը բերէ։ Անշուշտ միայն φαληρὸς բառը հակընալու է, որ սակայն բանաստեղծական եւ ցանցառ բառ մըն է, եւ որմէ φαληρότης ածանցեալ մը չկայ։ Այս բառն աւելի բնիկ հայերէն է, եւ ազգակից փողփողուն, փողփել բառերուն։

3. Փէննայ (Anemone, առ Մխիթ. Գօշ (ԺԲ դար.) եւ Գաղիանու թարգմանչին) զոր W յունարէն φαινὴς բառը կը համարի։ Միայն φαινὶς բառը կրնայ հակրցած ըլլալ, որ ըստ Սոփիբ. (առ Մեկն. Թէոկր. Ե, 92) լակոնական բարբառին մէջ Anemone կը նշանակէր։ Ուստի երկու բառերս իրարու հետ կապ չեն կրնար ունենալ։

Բուն փոխառեալ բառեր անոնք համարուելու են, որոնք

1. Կը գտնուին այնպիսի թարգմանութեանց մէջ որ իրենց սկզբնագիր բնագրէն անկախօրէն առեալ փոխագրուած են հայերէնի, ինչպէս է Նոր Կտակարանն, կամ ինքնագիր մատենագրաց քով բնիկ հայկական գաղափարաց շրջանին մէջ ինչպէս են պատմագիրք: Մ. Խորենացին զգուշութեամբ միայն գործածելու է, վասն զի ծանօթ է որ իւր բովանդակ ասութեան կերպն շատ մեծ ազդեցութիւն կրած է յունական ոճէն:

2. Որոնք գաղափարներ եւ իրեր կը նշանակեն՝ որ կամ հելլենական-բիւզանդեան քաղաքակրթութեան հետ մտած են ներս, կամ անոնց ձեռօք առհասարակ ծանօթացած:

Այս երկու նախադիր պայմանացս համեմատ գտնուող բառերը հետեւեալ խմբերու կը դասաւորենք ըստ կարգի նիւթոց:

## Ա. Ձայնաւորք:

Այս խմբին կը վերաբերի միայն կէտ, սեռ. կիտի, կամ արմատական ձայնաւորն պահելով ուղղականին նմանութեամբ՝ կէտի. (Մատթ. ԺԲ. 10. Եզնիկ, 103, 21. Խոսրով Անձեւացի, Գր. Նարեկ., Մաշտոց.) κῆτος (նաեւ սլաւերէնին մէջ մտած, Miklosich, 98.) Ասկէ զատ իբր գիտնական բառաձեւեր կը գտնուին նաեւ կետոս (Սուտ-Կալիսթենէս, Անանիա Շիրակ., Գր. Նարեկ.) կէտոս (Փիլոն, Վարդան, Ոսկեփորիկ, Յովհ. Երզնկացի:)

## Բ. Տանկեր:

1. Դաքնէ եւ դափնէ, հոլովեալ է-արմատ ունեցողներուն պէս. (— ք եւ փ տառերու նայ տառի մ'առջեւ զիրար փոխանակելը կը տեսնուի

նաեւ տոփր եւ տոբր բառերուն մէջ. Հմմտ. նաեւ յաբեթ = Ἰαφὲθ առ Խոր., տես Bugge, Indogerm. Forsch, I, 454. —) կը գործածեն Նոննոս, Ճառընտիրք, Գր. Մագիստրոս. տոբնիտ՝ Ագաթ. եւ Յայսմաւուրք, յունաձեւ տոփնէ՝ Փիլոն. զարմանալի կերպով ճիշդ վերջին ձեւս կանոնաւոր ձայնափոխութեամբ տեֆնէ եղած անցած է աշխարհաբար լեզուին, բայց ասոր հետ կը գտնուի նաեւ թեֆնէ՝ որ յայտնապէս նոր փոխ առնուած է աշխարհաբար յունարէնէն:

2. Զմուռս, սեռ. զմռսոյ, σμύρνα. (Սղմ. խգ. 10. Մատթ. Բ, 11. Յովհ. ԺԹ, 39. Գր. Նարեկ.:) Յունարէնին ν ձայնը պահուած է ածանցմանց մէջ՝ ինչպէս զմռնենի. նորագոյն σμύρρα ձեւին համապատասխան զմուռ ձեւը կը գտնուի անկախօրէն Մաշտոցի մէջ, անկէ ածանցեալ զմռել բառն արդէն Եղիշէի քով: Բառը փակող ս տառը ժողովրդական յաւելուած մ՚ըլլալու է. թէ երկրորդ ձեւն ն տառով ձեւէ մը յառաջ եկած է՝ կը ցուցընէ ս տառն, (ինչպէս մտադիր ըրաւ Փրոֆ. Հիւպշման,) որուն բուն տեղն է ճիշդ ռն տառախումբը: Բառիս յունարէնէ փոխառեալ ըլլալը կը ցուցընէ բառասկիզբն, վասն զի յունարէնին մէջ կրնայ նախնաբարսեմական *murr (Lagarde St. § 785) բառին սկիզբը σ տառը կցած ըլլալ: Այն որ σ տառը զ տառադարձուած է հայերէնին մէջ, համաձայն է այն յաճախ տեսնուած երեւոյթին՝ որով σμ տառախումբն ζμ (զմ) հնչուած կը գտնենք: Կ՚երեւայ թէ կանուխ ժամանակաւ փոխառեալ է բառս, վասն զի υ տառն ու հնչմամբ կը գտնենք փխ. ի, զոր կը գտնենք միայն նաեւ մատուռն բառին մէջ = μαρτύριον: Սակայն այս բառիս նկատմամբ՝ որ այն ատեն փոխառեալ ըլլալու է՝ երբ յունարէն υ տառն արդէն առհասարակ ü կը հնչուէր, միտ դնելու է որ երկու բառերս ալ բնիկ հայկական հոլովում ունին. ուստի υ տառին

ու- տառադարձութիւն թերեւս մեկնուի բնիկ լեզուին բոլորովին նմանցընելու ջանքովը:

3. Կապար, κάππαρις (Miklosich, p. 96) (Ժող. ԺԲ, 5. Կոչ. ընծ. Տօնական, Ոսկեփոր. Բժշկ.) Բառիս ժողովրդական ըլլալը կը ցուցուի անով որ անցած է աշխարհաբար հայերէնին եւ ապա վրացերէնին ալ:

4. Հալուէ. (Երգ երգոց, Ե, 11. Յովհ. ԺԹ. 39. Մ. Խոր. Աշխ. 615, 20.) ἀλόη. (Miklosich, p. 74.) Մակաբոյծ հ տառն այնպէս է՝ ինչպէս "հեթանոս" բառին մէջ = ἔθνος.

5. Մաստիքէ եւ Մաստաքէ, μαστίχη. (Խոր. Աշխ. 600, 23. Մխ. Գոշ, Միք. Ասորի, Վաստակք:)

6. Մանդրագոր, μανδραγόρος (Ծն. Լ. 14. Երգ երգոց, Ե, 13. Ագաթ. Մ. Խոր. Աշխ. 608, 8. Եզնիկ. 66, 22 եւն.) (Lag. St. § 1429) Այն որ νδρ ձայնախումբն պարզուած եղած է նր, համեմատելու է μπτ տառերուն պտ փոխուելուն՝ ի լապտեր = λαμπτὴρ.

7. Որէզ. (Ագաթ.) ὄρυζα (Miklos. 115.) Յետին թարգմանիչք՝ ինչպէս Գաղիանոս, Յայսմաւուրք, սոր տեղ կը գործածեն նախնաբար պարսկերէն բրինձ բառն՝ որ աշխարհաբարի անցած է:

8. Սպունգ, սեռ. սպնգի. (Մատթ. ԻԵ, 48. Մարկ. ԺԲ, 35. Յովհ. ԺԹ, 29. Ոսկեբ.) σπόγγος. — ս տառին ու- նուազելն նգ տառերու առջեւն՝ համեմատելու է ունկի = ὀγκία.

9. Ստեպղին, σταφυλῖνος, (Lag. St. § 436.) ԺԲ դարէն միայն կայ գործածուած. սակայն ձայնական յատկութիւնք՝ ի մասնաւորի ս հնչման կորուստը՝ կը ցուցընեն որ աւելի կանուխ փոխառեալ ըլլայ:

10. Ստրոփիլէնի = στρόβιλος, անգամ մը յիշուած Ճառընտրաց Բ մասին մէջ: Առաջին ո տառն svarabhakti մը համարելու է:

## Գ. Հանքանիւթեր:

1. Ադամանդ, ἀδάμας. (Ամովս, Է, 7, 8. Փիլոն. Գր. Մագ.:)

2. Ակատ. ἀχάτης (Ելք, ԻԸ, 19. Եզեկ. ԻԸ, 13. Ոսկեփորիկ:) Տոմարի մէջ ակատէս գիտնական ձեւը կը գտնուի նորանշան թաւ հնչում մ'առնելով: Այն զարմանալի երեւոյթն որ յունարէն χ տառը կ տառադարձուած է փխ. ք, թերեւս կը մեկնուի անով՝ որ ժողովրդական ստուգաբանութիւն մը ակն բառէն յառաջ բերած ըլլայ բառս (°):

3. Ամեթոյս. (Յայտն. ԻԱ, 20.) ամեթիստոս (Տօնակ.) ἀμέθυστος. Առաջին ձեւը պէտք է պարզապէս աղաւաղութիւն նկատել, վասն զի υ տառին ոյ տառադարձութիւնը անլուր է:

4. Բիւրեղ. (Ելք. ԻԸ, 20. Մովս. Խոր. 89, 8. Գր. Նարեկ., Վարդան.) βήρυλλος. (Lag. Ges. Abh. 225) Յունարէն η տառին ի- տառադարձութիւնը մեկնելու է րին առջեւն արտաբերութեան աղօտանալովն՝ ինչպէս նաեւ այս բառերուն մէջ՝ Բիւրոս = Βηρωσσὸς (Մ. Խոր.) Թիւրիակէ = θηριακὴ, Եքթիւրոն = ἰχθηρινὸς, Քիմիրոն = χειμερινὸς. Առ Եղ = υλ հմմտ. Գոնգեղ = γογγύλη, եւ կոնքեղ = κογχύλη.

5. Մարգարիտ. μαργαρίτης, բազմաթիւ ածանցմունքներ ալ ունի եւ հին է ու յաճախ գործածուած. աշխարհաբարի անցած է եւ եղած՝ մարգրիտ:

6. Մարմարիոն. μάρμαρον (Miklosich, 111.) (անգամ մ'ըստ պատահման յիշուած առ Մ. Խոր. Աշխ. 596, 16.) ածանցմունք արդէն հին ժամանակէն կը գտնուին, ինչպէս է ածականն՝ մարմարեայ (Երգ երգոց. Ե, 15:) Շատ անգամ կը շփոթուին ον եւ ιον վերջաւորութիւնք:

7. Մագնիտ. (Գր. Նիւսացի, Յայսմաւուրք.) մագնէտարիս (Գր. Նարեկ. μάγνης եւ μαγνήτης.

երկրորդ ձեւին անկանոն ո տառին համար համեմատելու է աթղէտայ ἀθλῆται (Եւս. Քր.)։

8. Յակինթ. (Ելք, ԻԸ. 20. Յայտն. ԻԱ, 2. Վարդան, Անանիաս Շիրակ, եւ իբրեւ ծաղիկ՝ նաեւ առ Ոսկեբ.) եւ յունական վերջաւորութիւնը պահելով յակինթոս (Տօնակ.) ὑάκινθος. Խոր. քով (Աշխ. 597, 17, ուր 1865ի հրատարակութիւնն ոչ այնչափ ուղղութեամբ "յակէնդ„ կը գրէ յենլով յակինթ ձեւին —) գործածուած յակունդ ձեւն անշուշտ ուղղակի ասորերէն ܝܩܘܢܬܐ ձեւէն փոխ առնուած է։ Բայց որովհետեւ նորանշան կ՚երեւայ յունարէն ύα տառերուն յա փոխուիլն հայերէնի մէջ, (— վասն զի ի հարկէ աւելի իա կը սպասուէր. —) կ՚երեւայ թէ բառը բուն արամերէնէ առնուած է եւ յետոյ վերջաւորութիւնն ըստ յունարէնին ծայրը կցուած։ Պարսկ. jakand բառին վրայ հմմտ. Nöldeke, Bezzenberger's Beiträge, IV, p. 63.

9. Սարդիոն. σάρδιον. (Ելք. ԻԸ, 17. Եզեկ. ԻԸ, 13. Յայտն. Դ, 3. Մ. Խոր., Գր. Մագ.։)

10. Տպազիոն. (Յոբ. ԻԸ, 19. Եզեկ. ԻԸ, 13. Յայտն. ԼԱ, 20. Թ. Արծր.) τοπάζιον. Նորանշան է o տառին կորուստը։ Արդեօք բառս սխալմամբ τύπος բառին բազմաթիւ ածանցմունքներէ՞ն համարուած է, որոնք կանոնաւորապէս տպ-տառերով կը սկսին։

## Դ. Մարմնոյ մասունք եւ հիւանդութիւնք:

1. Ստամոքս. στόμαχος (Miklos. 127.) (Ա. Տիմ. Ե, 23. Վարք Հարանց, Ներս. Լամբր., Ն. Շնորհ.։) Մարդկային ստամոքսին համար ազգային բառ մը չունին Հայք։ Առաջին եւ երկրորդ վանկերու ձայնաւորք փոփոխուած են իրարու տեղ։

2. Պոդագրոս. ποδαγρός. (Մ. Խոր. 107, 27. Ագաթ.) Առաջին վանկին ձայնաւորին եր-

կրորդին հետ համաձայնցընելն այլուր ալ շատ կը գտնենք, ինչպէս լական = λεχάνη. Յունարէն δι տեղ զ գրուիլը կ'երեւայ թէ բարդութեանց մէջ յաճախ գործածուած ըստ մասնական նմանողութեամբ եղած է. սակայն համեմատէ ասորերէն ܙܘܓܐ (Anc. syr. doc. 5, 23)· բայց կայ նաեւ ܕܝܘܓܐ (անդ, 4, 15.)

## Ե. Անօթք եւ Ամանիք:

1. Անդրի. ἀνδριάς. (Եղիշէ, Մ. Խոր., Մագիստրոս:) կայ նաեւ գիտնական ձեւս անդրիանդ. (Եւս. Քր., Դամասկոս, Նոննոս:)

2. Բադրոն, եւ մասնկամբ՝ բադրոնակ. βάθρον (Յով. կաթ., Ճառընտ. նաեւ Եփրեմ "դագաղ" իմաստով:)

3. Բաղանիք, բաղանեաց, βαλανεῖον (Եզեկ. ԻԳ. 14, Եւս. Եկղ. Պատմ., Մ. Խոր., Վարք Սրբոց, Գր. Մագ. եւն.) աշխարհաբարին մէջ բաղնիք ձեւով մնացած է:

4. Բեմ. βῆμα (Մ. Խոր., Յովհ. կաթ. եւն.) եւ առեղծուածաւոր մասնկամբ՝ բեմք. (Ղազ. Փարպ., Գր. Նարեկ. եւն:)

5. Գառագեղ. գայռագեղ, -գիղ, -գիաղ. γαλέαγρα (Lag. § 455.) բաց ի թարգմանութիւններէն՝ կը գտնուի նաեւ Եղիշէի եւ Ն. Շնորհալւոյ քով: Պարզապէս սխալ կ'երեւայ յ ("գայռադեղ") գրելը: Երկու դողդողուն տառերն փոխխուած են իրարու հետ, ինչպէս նաեւ տառաղոն = τάλαρος բառիս մէջ: Վերջնավանկին ե տառն svarabhakti մըն է՝ ինչպէս նաեւ ի բառիս տաւեղ = τάβλα. իսկ εα տառերուն առադարձուելուն համար հմմտ. թատր = θέατρον.

6. Զեւմ. ζεῦγμα (Սեբ. 31, 5. Ղեւոնդ, Լբ. Պատկանեան, Աշխ. Մ. Խոր. 55, ծն.) Անշուշտ արդէն աշխարհաբար յունարէնին մէջ μ տառին առջեւ γ տառն անհետ եղած էր:

7. Թատր, սեռ. Թատեր. (Յովհ. Մանդակունի եւ այլ հին թարգմանութիւնք.) θέατρον.

8. Լամբար եւ յաճախ ղամբար. λαμπὰς. (Miklos. 104.) (Հին եւ Ն. կտակ. Եղիշէ.) δ եւ բ տառերուն եղած փոփոխութեան համար հմմտ. Hübschmann, ZDMG, XXXVI, p. 133.

9. կամփաչ, χαμψάχης. (Ա Թագ. ԺԵ, 12. Յովհ. Սարկաւագ.) (Lag. St. § 1093) Ասկէ զատ մփա տառախումբն պարզելով՝ կը գտնուին նաեւ չամաչ եւ չափաչ ձեւերն. հմմտ. լապտեր = λαμπτὴρ.

10. կամար, χαμάρα. (Ես. Խ., 22. Գր. Նարեկ.) Ներս. Շնորհ. (Lag. § 1089.)

11. կանթեղ. χανδήλα. (Lag. St. § 1100.) (Փաւստ. Բուզանդ, Հրտ. Պատկ. 184, 8.) Ղազ. Փարպ., Եղիշէ։)

12. կղ(ե)մ(ն)տր. (Վարք Հարանց, Յովհ. կաթ. եւ յետինք.) կղմինտր՝ թարգմանութիւն բարդի χεραμὶςին (Lag. § 1164.) (Miklos. 97.) Պէտք է որ կանուխ փոխառեալ ըլլայ բառս, վասն զի -ր մասնիկ մ'ալ վրան առնելով զարգացած է, ուստի եւ արմատին ր տառը տարաձայնած է (dis-simile.) λ տառին առջեւ ε տառն կորսուած է. ինչպէս նաեւ ի դլփին = δελφὶν, պտղի = πτελέα, հմմտ. նաեւ պտղոմայիս = πτολεμαὶς եւն. Մ. Խորենացւոյ ցանկին մէջ։ Նախ ա տառն յաջորդ վանկին ի տառին համաձայնած է եւ յետոյ մասամբ կորսուած է ծանօթ ձայնական օրէնքին համեմատ։ Անկանոն կերպով ն մ'աւելցուիլն անձայն տառի մ'առջեւ, երբ վերջնոյս կից է նայ տառ մը, կը գտնենք նաեւ ի սիմինդր = σεμίδαλις եւ ի լամբիւրինթ = λαβύρινθος. Յետոյ չղ՞ տառախումբն կրկին svarabhaktiով մը թեթեւցած է։

13. կաղամար. χαλαμάριον (Miklos. p. 75.) (Վարք հարանց, Գր. Մագիստր. եւն։) Գրելու

արուեստին վերաբերող ուրիշ փոխառեալ բառերը տես վարը՝ թիւ 14, 21։

14. Մեղան. (Վարք Հար., Խոսրով.) մեղան (Վարդան եւն.) μέλαν.

15. Մեքենայ եւ յաճախ մենքենայ. μηχανὴ, բնիկ եւ փոխաբերական նշանակութեամբ՝ հին եւ յաճախ։ Երկրորդ վանկին α ձայնաւորն համաձայնած է նախընթացին հետ. + տառին առջեւն մակաբոյծ ն մը դրուիլը յառաջ եկած կ'երեւայ μάγγανον բառին խառնուելովն։ Այս բառն ալ փոխառեալ է մանգղիոն ձեւով, զոր W յառաջ կը բերէ իբր երկրորդական ձեւ մենքենայի։ Բայց թէ ասոնք իրարմէ բաժնելու է՝ կը ցուցընէ Մակաբէացւոց գրոց այն տեղն՝ որ ի վկայութիւն բերուած է, եւ ուր երկու բառերը քովէքով կը գտնուին։ Իսկ ղ տառը ն տառէն յառաջ եկած է տարաձայնութեամբ (dissimiliation), ինչպէս որ համաձայնութեամբ (assimilation) յառաջ եկած է ալաբողոն բառին մէջ = ἀνάβολον. — ιον եւ ον վերջաւորութեանց փոխանակութեան վրայ տես վերը՝ Գ, 6։

16. Պնակ եւ նուազականն՝ պնակիտոն, πίναξ եւ πινακίδιον (Ղուկ. ԺԱ, 39. Վարք Հարանց, Վարդան եւն.) (Lag. § 1889.) ի ձայնաւորն կորսուած է ըստ ծանօթ ձայնական օրինաց։

17. Սկուտեղ. (Մատթ. ԺԴ, 8 եւ 11. Մարկ. Զ. 25 եւ 28. Եղիշէ. Մ. Խոր., Ագաթ.) սկուտեղ (Ղազ. Փարպ. եւ յետինք) σχουτέλα (du Canges II, 1399) լատիներէն scutelaյէն (Miklos. 125.) Ըստ ձայնական օրինաց կորսուած էր ու ձայնաւորն, որ յետոյ գիտնականօրէն վերստին մուծուած է։

18. Ստամոն. στάμνος (Մարկ. Է, 4 = ξεστὸς, Հին կտ. եւ յետնոց քով.) մ եւ ն տառերու մէջ մնացած ձայնաւորն svarabhakti մըն է, թերեւս նախնաբար ո, այնպէս որ առաջին եւ երկրորդ վանկերու ձայնաւորքն իրենց տեղը փոխած են, ինչպէս հակառակն պատահած էր ստամոքս բառին մէջ։

19. Սրինգ, սեռ. սրնգի. σύριγξ (Դան. Գ, 5 եւն. Ամոս Ե, 23. Թովմաս Մեծոփեցի, Գր. Նարեկ, Վարդան եւն:)

20. Սփրիդ, սփիւռիդ. (Վարք Հարանց, Եղիշէ, Ոսկեբ.) σφυρίς. կայ նաեւ փիւռիդ (Lag. § 2296.) սկզբան կրկնաբաղաձայնը պարզելով՝ ինչպէս նաեւ հետեւեալ բառերուն մէջ՝ սաղմոս = ψαλμὸς, կիփոս = σκῦφος եւն, եւ ընիկ կիւսոր բառն սկիւսորին քով:

21. Տոմ (Ճառընտ.) տոմս (Եզ. Ը, 1. Աթանաս.) տոմար (Վարք Հար., Ճառընտ., Յովհ. կաթ. եւն.) τόμος եւ τομάριον. τόμοςին երկրորդ ձայնաւորին ինկած է՝ ինչպէս կոմս = χόμης բառին մէջ ալ η տառը: Տոմարի քով կայ նաեւ տումար:

22. Փելոն. φελόνης (Բ Տիմ. Դ, 13, Վարք Հար. Ներս. Լամբր. եւն.) (Miklos. 87) որ դեռ ժողովրդեան լեզուին մէջ մնացած է քահանայից եւ կրօնաւորաց զգեստի մը նշանակութեամբ: Հոս ε տառին է փոխուիլն՝ ինչպէս նաեւ նախընթաց բառին մէջ օի = ու ըլլալը մեկնելու է անշուշտ անով որ նախնաբար յունական ձայնաւորքս երկար կը հնչուէին իբր ē եւ ō, որով յետոյ ծանօթ ձայնական օրինաց ենթարկուեցան:

23. Քարտ. (Եր. Լ, 8. Յովհ. կաթ., Նոննոս, Փիլոն. Յովհ. Մանդակ.) քարտէս (Մովս. Խոր. կայ տարբեր ընթերցուածն՝ քարտեղ.) χάρτης (Miklos. 92.) Գր. Նարեկացւոյ քարտէնի գործածելուն նկատմամբ ընդունելու է հայերէն մանկով քարտէան ուղղական մը, եւ այսպէս ուղղելու է Յովհ. Կղիմաքեայ թարգմանչին խօսքն փխ. ի քարտէնս (այլ ընթերց, ի քարտինս.) վասն զի չենք գտներ ուրիշ յունարէն բառ մը հայցականի ձեւով փոխառեալ:

## Զ. Չափ եւ դրամ:

1. Դենար. (Յովհ. ԻԲ, 5. Յայտն. Զ, 6. Գր. Նարեկ.) (Mikl. 84) δηνάριος.

Ծան. Ասոր հետ բաց իմաստին սերտ կապ ունեցող դրամ բառը = δράχμη պարսկերէնէ փոխառեալ է (ընդդէմ Lagardeի, St. § 665), ինչպէս ձայնական հանգամանքը կը ցուցընեն. յետոյ պիտի տեսնենք գիտնական յունանման ձեւ մը:

2. Լիտր, սեռ. լտեր. (Հին կտ. Գր. Մագ. եւն. Անանիա Շիրակ. Հրտ. Պատկ. 28, 12) λίτρα.

3. Ստա(ե)ր. (Հին եւ նոր կտ., Եղիշէ) στατὴρ (Lag. St. § 1955) (Mikl. 127.) կրած փոփոխութեան համար հմմտ. Դ, 20:

4. Տաղանդ. (Նախնական իմաստով կը գտնուի յետնոց քով, զոր 'օր. Անանիա Շիրակ. 29, 4. իսկ փոխաբերական իմաստով արդէն առ Յովհ. Մանդակ.) τάλαντον.

5. Մղոն. (Մատթ. Ե, 41. Վարք Հար., Մ. Խոր. Աշխ.) μίλιον. Յետնագոյն ձեւեր են մըլ (Միք. Ասոր.) եւ մըլոն (Վարք Հար.):

## Է. Ազգաց անուանք:

1. Ասորի, Ասորեստան (Միջագետք) միայն յունարէն Ἀσσύριοςէն կրնայ փոխառեալ ըլլալ. վասն զի միայն վերջնոյս գործածութիւնը կը համաձայնի հայոյն հետ: Կ'երեւայ թէ Լակարտ (St. § 197) համեմատելով արամէական אתורי անուան հետ ակնարկել կ'ուզէ որ արամերէնէ փոխառեալ ըլլայ: Սակայն նաեւ ընդունելով իսկ որ Արամեացիք Ասորեստանեայց իշխանութեան ժամանակ այնպէս անուանած ըլլան իրենք զիրենք, (— որ չի կրնար ցուցուիլ եւ անհաւանական է, վասն զի անըմբռնելի կ'ըլլար այն ատեն, որ այս անունն դարձեալ անգործածական եղած պիտի ըլլար ստուգիւ աւելի հնագոյն ארמי անուան ձեռօք, —)

սակայն ի դերեւ կ'ելլէ այս կարծիքն այնու որ փոխառեալ բառերու մէջ արամէական ת տառն սովորաբար Ե կը տառադարձուի: Յունարէն σσ կրկին տառերուն հայերէնին մէջ պարզապէս ս ըլլալը շատ նմանեաց մէջ ալ կը տեսնուի: Դժուարութիւն յարուցանողն այն է միայն որ ս կը գտնենք յունական υ տառին դիմաց: Սակայն որովհետեւ ապահովապէս կանուխ ժամանակաւ փոխառեալ է բառս (վասն զի Հայք արդէն իսկ հելլենական ժամանակները միայն Συροὶ անունը կը լսէին,) պէտք էն υ = ŭ դնել, որ r տառին առջեւ կրնար օի նման հնչում մ'առած ըլլալ: Չենք կրնար ասոր հետ համեմատել ողոմպիա եւն. (տե Մ. Խոր.), վասն զի ձայնաւորի համաձայնութեան օրինաց համեմատ կազմուած են:

2. Հռոմ, հոռոմ, հոռոմայեցի, Ῥωραῖος, հին եւ յաճախ: Յունարէն ῥ տառն հռ- տառադարձուած կը ցուցընեն նաեւ հռետոր = ῥήτωρ, հռոգ = ῥόγα, Հռեբեկայ = Ῥεβέκκα (Հռովմ. Թ, 10.) Այն տառն հ եւ ռ տառերուն մէջ՝ իբրեւ svarabhakti մտած է ո ձայնաւոր:

## Ը. Պաշտամանց բառեր:

1. Հռետոր, ῥήτορ (Մ. Խոր., Ղազ. Փարպ., Թ. Արծր. եւն,):

2. Սոփեստ. (Բուզանդ. 101. Վարք Հար., Գր. Նարեկ.) σοφιστὴς. Իսկ i ձայնաւորին e փոփոխելն st տառերուն առջեւ կը գտնենք նաեւ այս բառիս մէջ՝ մագեստրիանոս = μαγιστριανὸς.

3. Փիլիսոփայ. (Գործ. Առաք. ԻԷ, 18. Եզնիկ եւ Թարգմանութիւնք.) φιλόσοφος. Երկրորդ ձայնաւորն համաձայնած է առաջնոյն:

Հետաքրքրական է ճշդիւ այս երեք բառերուն փոխառութիւնն՝ որ հելլենական քաղաքակրթութեան առանձնայատուկ պաշտամանց բառեր են:

## Թ. Ընկերական կազմութիւնք:

1. **Պանդոկ** եւ **պանդոկէ** πανδοχεῖον (Lag. § 1808) (Ղուկ. Ժ, 34. Վարք Հար., Մեսրոպ Երէց, Ն. Լամբր. եւն.)։

2. **Պոռնիկ.** (Ա Կոր. Ե. 10. Ոսկեբ., Եփրեմ.) **պոռնկական** (Մ. Խոր. 39, 24) πορνικὸς, πορνικὴ = πόρνος, πόρνη. Կ'երեւայ թէ ժողովրդեան մէջ շատ գործածական եղած չէ բառս. վասն զի պատմագիրք **Բոզ** բառը կը գործածեն, զոր թարգմանիչք եւ աստուածաբանք չէին գործածեր՝ անշուշտ խորշման համար։

3. **Տոկոսիք.** τόκος (Mikl. 132) (Մատթ. ԻԵ, 17, Պղատոնի Մինովս) **տոկոսն** (վաշխառու իմաստով, Ղազ. Փարպ.։) Երբ այս միեւնոյն բառը կը գործածուի նաեւ τόκος (ծնունդ) բառին տեղ (Ամովս. Թ, 11), պատճառն է պարզապէս թարգմանչին անփութութիւնն, որ չէր հասկցած իւր առջեւն եղած բնագիրը։

## Ժ. Բանակ:

1. **Լէգէոն.** (Մարկ. Ե. 9, 15. Յովհ. կաթ., Թովմ. Արծր. եւն) λεγεὼν.

2. **Հռոգ**, (Թոշակ. Ղեւոնդ, Յովհ. կաթ., Արիստ. Լաստիվ. եւն.) ῥόγα (du Cange, II, 1302.)

3. **Ստրատելատ.** (Մ. Խոր., Բուզանդ, 155 հրտ. Պատկ., Ճառընտ.) στρατηλάτης, եւ այսպէս պէտք է Բուզանդայ քով (էջ 168) ուղղել կարդալ փոխանակ **ստրատ** ընթերցման, զոր W կը ջանայ մեկնել στράτιοςով, որ գոյութիւն չունի։

4. **Փաղանգ.** (Ղազ. Փարպ., Սեբէոս՝ 39, 4 եւն հրտ. Կ. Պոլ., Գր. Նարեկ. եւն.) φάλαγξ (Lag. St. § 2278.)

5. **Փոս**, սեռ. **փոսոյ.** (Եր. ԻԵ, 12. Մ. Խոր. 219, 25. Ագաթ., Յովհ. կաթ. եւն.) φόσσα (Lagarde, St. § 2305.)

## ԺԱ. Տէրութիւն։

1. կայսր. καῖσαρ (Mikl. 81.) (Ա. Մակ. Ա, 1. Գ, 27. Մ. Խոր. 104, 19. Թովմ. Արծ., Գր. Նարեկ. եւն.) կայսերական (առ Ագաթ.)։ Ուղղականին մէջ ր տառէն յառաջ ձայնաւորն ինկած է՝ ինչպէս նաեւ ի ստեր = στατὴρ. կայ նաեւ նորագոյն ձեւն կեսար (Մ. Խոր. 165, 13. Յովհ. կաթ. եւն.)

2. կոմս, κόμης. (Ագաթ., Մ. Խոր. 225, 12. Ղեւոնդ, Վարք Հար., եւն.) Երկրորդ ձայնաւորին կրած փոփոխութեան համար տես Դ, 21։ Միեւնոյն բառն երկրորդ անգամ գոմս ձեւով (Վահրամայ քով) փոխ առնուած է ռոմանական լեզուներէն։

3. Հիւպատոս. (Ա. Մակ. ԺԵ, 11. Թովմ. Արծ. եւ այլք յետոյ) ὕπατος. կայ նաեւ անթիպատոս ἀνθύπατος (Եւս. Քր., Ճառընտ.) բարդիչ երկու մասունքն ալ գիտնականօրէն վերստին կազմելով։

4. Պատրիկ. πατρίκιος. (Եւսեբ., Ղեւոնդ, Ստեփ. Ասողիկ։)

5. Սինկղիտոս. (Մ. Խոր., Վարք Հարանց, Եղիշէ եւն.) σύγκλητος. անշուշտ υ տառին ի տառադարձութիւն յառաջ եկած է ձայնաւորները հաւասարցընելու ճգէն։

6. Սպաթար. σπαθάριος (Սեբէոս, Հմմտ, Hübschmannի Թարգմանութիւնը, էջ 21 ծան.. եւ Ճառընտ.։)

7. Քարտուղար, χαρτουλάριος (Մ. Խոր. 147, 5 եւն. Յովհ. կաթ.,) նորագոյն ձեւով՝ խարթուլար (Մխիթ. Գօշ։)

8. Պաղատ(ն). (Մ. Խոր. 191, 9. Ղազ. Փարպ., Վարք Հարանց. եւն.) παλάτιον (Mikl.119) "Թագաւորական գանձ„ նշանակութեամբ՝ Վարդանայ քով՝ տպ. Վենետ. էջ 141, հմմտ. ծան. 5։

## ԺԲ. Եկեղեցի:

Եկեղեցի = ἐκκλησία հին եւ յաճախ: Երկրորդ ե տառն svarabhakti է. ց = σ ժողովրդական ստուգաբանութեան մ'արդիւնք ըլլալու է:

### Ա. Պաշտօններ:

1. Աբբաս եւ աբբայ ἀββᾶς (Վարք Հար.:)

2. Արքեպիսկոպոս. ἀρχιεπίσκοπος (Մ. Խոր. 228, 6 եւն. Յովհ. Կաթ. Ներս. Լամբր.) Աւելի ժողովրդական է կէս-հայ եպիսկոպոսապետն, որ Բուզանդայ քով արք-նախամասնիկն ալ առած է:

3. Արքիդիակոն, ἀρχιδιάκονος (Բուզանդ, Հրտ. Պատկ. 118:)

4. Արքիմանդրիտ. (ἀρχιμανδρίτης. կայ նաեւ արշի-ձեւն՝ որուն մէջ շ = χ կը տեսնուի, ինչպէս նաեւ շլորոս = χλωρὸς (Յայտն. Զ, 8:)

5. Եպիսկոպոս. ἐπίσκοπος, հին եւ յաճախ:

6. Կաթողիկոս = καθολικὸς, որ նաեւ աշխարհաբարի մէջ մնացած է կաթողիկոս ձեւով: Երկու բառերս ալ արմատը՝ տառով ճոխացած յոգնակի կրնան առնուլ („եպիսկոպոսունք:")

7. Կղերք, (Բուզ. տպ. Վենետ. էջ 70, Թովմ. Արծր., Յովհ. Կաթ.) կղերական (Կորիւն 5.) կղերիկոս (Յովհ. Կաթ., Ն. Լամբր.) κλῆρος, κληρικὸς.

8. Մետրոպոլիտ, սեռ. -լտի, μητροπολίτης. (Ագաթ., Յովհ. Կաթ.:) Չենք կրնար յունարէն օի տեղ ո ձայնաւոր ունենալը տարաձայնութեան ճգամբ մեկնել. մանաւանդ թէ՝ ինչպէս շատ անգամ տեսանք, հայերէնը միտութիւն մ'ունի յունական փոխառեալ բառերու մէջ զիրար յաջորդող վանկերու ձայնաւորներն իրարու համաձայնցընելու: Ուստի կը մնայ միայն ընդունիլ որ բառս բարդուած նկատելով՝ հայերէնի մէջ բարդ բառերուն առաջինն երկրորդին հետ կցող ձայնաւորը մուծուած է: Այս բառն ալ թիւ 5 եւ 6 բա-

ուերուն պէս յոգնակին կը կազմէ ն տառով՝ արմատը ճոխացնելով։ Յայտնապէս այս բառերն՝ իբրեւ միեւնոյն գաղափարաց կարգին վերաբերեալ անուանակոչութիւնք՝ նաեւ ըստ ձեւին իրարու վրայ ազդած են։

9. Մոնոզոն. ցանցառ՝ հայացած մոնազն (Վարք Հար., Ղեւոնդ, Թովմ. Արծր., Վարդան եւն.) μονάζων.

10. Պապ. πάππας իբր տիտղոս Աղեքսանդրիայի Պատրիարքաց (Վարք Հարանց,) եւ Հռոմայ քահանայապետաց (անդ, եւ յետնոց քով.) վերջնոցս համար կայ նաեւ՝ պրոտոպապ = πρωτοπάππας (Ագաթանգեղեայ կից տպուած Հռոմայ եւ Հայ եկեղեցեաց Դաշանց Թղթին մէջ։)

11. Պատրիարք. πατριάρχης (Յովհ. Կաթ., Մխ. Այրիվ. եւն։) ր տառին հնչականութիւնն անցնելով անձայն թաւ տառին՝ վերջինս կորսնցուցած է իր թաւութիւնն, վասն զի հայերէնը հնչական թաւ տառ չունի։ Միեւնոյն երեւոյթն՝ յետընդդէմ ազդող զօրութեամբ՝ կը ցուցընէ դրամ բառը = δραχμὴ.

12. Պերիոդեւտ. եկեղեցական վերատեսուչ, կանոնաց Թարգմանութեան եւ Մխ. Գոշի մէջ եպիսկոպոսաց եւ քորեպիսկոպոսաց հետ յիշատակուած։ W կը մեկնէ περιειδὼν բառով՝ որ գոյութիւն չունի. ուղիղն է περιοδευτὴς (du Cange, I, 1153։) Երկու ձայնաւորաց հանդիպումն տեղի չէ ունեցած ի ձայնաւորին դուրս իյնալովն, ինչպէս նաեւ արքեպիսկոպոս բառին մէջ։ Թէ ձայնաւորաց եւ թէ բաղաձայնից կողմանէ առանց նմանութեան է δευτ վանկին դեւտ տառադարձուիլն, որ թերեւս աղաւաղեալ ըլլայ ժողովրդական ստուգաբանութեամբ մը։ Ըստ Մխիթարայ այս աստիճանն իւր ժամանակ քոր կը յորջորջուէր („որ այժմ է քոր.„ — այսպէս պէտք է տրոհել, ուստի Վեն. Բառագրոց Ա, 514 յիշած էքոր„ ձեւը ջնջել։)

*Այս բառն կ'երեւայ թէ առաջնէն ողած է, բայց դժուարաւ ուղիղ հասած է մեզի: Ջախջախեան կը մեկնէ* Ջոսփ *բառն՝* ministro de preti *կամ* subdiacono, *սակայն Վէն. Բառագրոց մէջ վկայութեան բերուած խօսքին մէջ յայտնապէս աւելի բարձրագոյն եկեղեցական աստիճանի վրայ է խօսքը. իսկ թէ ուրիշ տեղ մ'ալ աչքին առջեւն ունէ՞ր Ջախջախեան՝ տարակուսական է:*

13. Սինոդոս. *σύνοδος* (*Բուզ.* 191, 1 *Հրտ. Պատկ., Գր. Նարեկ. եւն.:*)

14. Քորեպիսկոպոս *χωρεπίσκοπος* (*Զենոբ, Եղիշէ, Կանոն.:*)

15. Փիլիսոփայ. *φιλόσοφος.* ԺԲ *դարէն ետքն՝ եկեղեցական երգչի իմաստով:*

*Բ. Եկեղ. կազմութիւն:*

1. Թեմ. *θέμα.* (ԺԲ *դարէն:*)

2. Լաւրա. *λαῦρα* (*վանք. Վարք Հարանց:*)

*Գ. Պաշտաման կազմածներ:*

1. Աղաբողոն. (*Ոսկեբ., Եղիշէ, Սարգիս եւն.*) աղաբողոնի (*Վարք Հար.*), աղաբանոն (*Մաշտոց,*) անափող (*Վարք Հար.*) ղաբողոն (*Ճառընտ.*) *ἀνάβολον.* *Բառիս այլեւայլ ձեւերը կը ցուցընեն երկու նայ տառերուն համաձայնութիւն եւ դարձեալ տարաձայնութիւն, նաեւ ձայնաւորին ծանօթ համաձայնութիւն: Վերջին ձեւին մէջ* a *ձայնաւորին կրճատման հետ համեմատելու է* առնոն = *ἀῤῥαβὼν.*

2. Ամբոն եւ ամբիոն. *ἄμβων* (*Վարք Հար. եւն.*) *հոս ալ* -ոն *եւ* -իոն *իրարու հետ կը փոխանակուին, թէ եւ առաջինն* -ωνէ *ծագած է:*

3. Կողոբ. *κολόβιον* (*Եղիշէ, Վարք Հար.:*)

4. Պերող (*Յայսմ.*), պերողոտ (*Վարդան*) *περιζώστρα* (*իբրեւ մասունք Ս. Հռիփսիմէի:*) *Ըստ ձայնական հանգամանաց պէտք է որ այս բառը շատ կանուխ փոխառեալ ըլլայ քան այն ժամանակն՝ երբ գրութեանց մէջ կը հանդիպինք անոր:*

### Դ. Տօնէր:

1. Կիւրակէ եւ կիւրակէ. κυριακὴ (Ղեւոնդ, 103 եւն.). υ = ի՝ k տառէն ետքը կը գտնենք այլուր ալ յաճախ, Հմմտ. օրինակի համար՝ կիւբէկոն = κυβικὸν, կիւռ = κύριος եւն:

2. Ողոգոմեան. (Սեբէոս, տպ. Կ. Պ. 77 եւն.) = εὐλογημένη: Միտ դնելու է առաջին երեք ձայնաւորներուն համաձայնման եւ հայկական վերջաւորութեան: Ղոգոմեան ձեւին մէջ սկզբան ձայնաւորը կրճատուած է, ինչպէս նաեւ օրինակի համար ղոբողոն բառին մէջ:

3. Պենտակոստէ. (Ա. Կոր. ԺԶ, 8. Գործք, Ժ, 12. Վարք Հար., Գր. Նարեկ. եւն.) ցանցառ՝ պենտեկոստէ. πεντηκοστὴ: Այն որ ա կը գտնենք փխ. η, պէտք է անշուշտ այնպէս դատել՝ ինչպէս մետրապոլիտ բառին մէջ:

### Ե. Մատենագրութիւն:

1. Կաթողիկեայ. (Ագաթ. եւն.) ցանցառ՝ կաթողիկէ (Եւս. Եկղ. Պատմ., Աթանաս, Տօնական.) καθολικὴ (այսինքն՝ ἐπιστολὴ, թուղթ:)

2. Կանոն. (Գաղատ. Ժ, 13, Գր. Նարեկ.) κανὼν.

3. Սաղմոս. (Բուզ. 184, 8. Հրտ. Պատկ., Եղիշէ եւն.) ψαλμὸς. Սկզբնական կրկնաբաղաձայնը լուծուած պարզուած է՝ ինչպէս նաեւ սատեր = στατὴρ եւ փիւրիդ = σφυρὶς: Ներս. Լամբ. կը գործածէ լիակատար ձեւը՝ փսաղմոս:

4. Մարտիրոլէգ. (Մաղաքիա Աբեղայ.) ուղղելու է անշուշտ՝ մարտիրոլոգ μαρτυρολόγιον.

### Զ. Աստուածաբանութիւն:

1. Գեհեն. γεέννα (Ղազ. Փարպ., Արիստ. Լաստիվ. եւն) եւ բազմաթիւ ածանցմունք. (Miklos. 89.)

2. Կաթարոս. *καθαρός*. (Նոյնատեանց անուանակոչութիւնն. Եւս. Եկղ. պատմ., Սեբերիանոս, Ոսկեբ., Թէոդ. Քութենաւոր։)

3. Հեթանոս. *ἔθνος* = *ἕλλην*, (օրինակի համար՝ Յովհ. Է, 35. Եզնիկ, 9, 21 եւն։) Մակաբոյծ ե տառին համար հմմտ. հալուէ = *ἀλόη*. ն-ի առջեւ եղած ա svarabhakti է. հմմտ. Hübschmann, ZDMG, XLVI, p. 242.

4. Հերեսիովտք, *αἱρεσιῶται* (Եւսեբ. Եկղ. Պատմ., Ոսկեբ. եւայլ թարգմ., Սարգիս, Ճառընտ.։)

5. Հերետիկոս. (Յովհ. Մանդ., Մխ. Գօշ եւն.) *αἱρετικός*.

6. Մարտիրոս. *μάρτυς*. (Ագաթ., Վարք Հար. եւն։)

7. Մատուռն. *μαρτύριον* (Ագաթ. եւն։) υ տառին ու-ի տառադարձուելուն վրայ՝ տես Ա, 2։ Առաջին ր տառն կորսուած է տարաձայնութեամբ։ Պէտք չէ զարմանալ որ այս բառը նախընթացէն շատ աւելի ձուլուած է բնիկ հայ լեզուատարրի մէջ. վասն զի վկայարանք ի հարկէ աւելի ժողովրդականութիւն ունէին։

8. Որթոդոքս, *ὀρθόδοξος*. (Բուզ., Սեբեր։)

---

Երկրորդ խմբին անձուկ մտօք օտար բառերուն՝ կարգէն են այն ամէն մասունքն հայերէն բառագրոց, որոնք դեռ եւս իբր բոլորովին օտար կը նկատուին, եւ միայն որոշ ոճաբանական վախճաններու կը գործածուին։ Ըստ այսմ իրենց գործածութեան շրջանը շատ աւելի անձուկ է, եւ սահմանափակուած այն մատենագրաց վրայ՝ որոնք լիովին ըստ յոյն օրինակաց կը գործէին, ուստի յատկապէս աստուածաբանից։ Ի հարկէ հոս պէտք է ի մասնաւորի յիշատակել թէ հայ գիտնականք միշտ ջանացած են՝ յունական գիտութեան յատկաբանութիւնքն (terminologie) ըստ կարելւոյն բառ առ բառ իրենց լեզուին անցընելու։ Ասով

երեւան ելած են կարգ մը նորակերտ բառեր, որոնք մասամբ անհասկանալի կը մնան առանց յունական սկզբնականաց տեղեկութեան, ուստի առիթ տըւած են նոյն իսկ իրենց Հայոց՝ անոնց վրայ բառագիտական երկեր յօրինելու. (Հմմտ. Karamiantz, Verzeichniss der arm. Hdschr. in Berlin, p. 62, nr. 79, III.) Եւ որովհետեւ այս բառերն նշանակութեանց կողմանէ այլեւայլ կարգերու կը վերաբերին, իսկ ըստ նիւթոյ ամենեւին կարեւորութիւն մը չունին, ուստի զասոնք այստեղ միայն այբուբենական կարգաւ կը դնենք:

Ագոն, ἀγὼν (Մ. Խոր. 159, 9. Եւս. Քր.), Սիսիանոս՝ որուն մրցանակին ագոնէ ըսելը թերեւս լոկ հետեւողութիւն ըլլայ Մովսէսի մրցական ագոնէ ատութեան: — Աթերայ, ἀθήρα (Սուտ-Կալ. եւ անկէ Մ. Խոր. 262, 4. Վարք Հար.:) — Ալֆաբետա, ἀλφαβῆτα (Յովհ. Մանդակ., Կոր., Ոսկեբ.:) — Ակատ, ἀκάτιον (Գր. Նարեկ.:) — Ագարիկոն, ἀγαρικὸν (Մխ. Բժ.:) — Անդիլեպս ἀντίληψις համանուն է մընորդի (Քրիստոս) (Ներս. Լամբր.:) — Անթեմ, ἀνθέμιον (Կոչ. ընծ., Ճառընտ., Տօնական:) — Անիսոն, ἄνισον (Բժշկ. Mikl. 74.) — Աստրոլաբոն, ἀστρολάβον (Մ. Խոր. Աշխ.:) — Արգիւրոն, ἄργυρον (դրամի տեսակ մը, Անանիա՝ 33, 18. Տօնական:) — Արթր, իբր քերականական բառ՝ ἄρθρον (Եզնիկ, 261, 19. Սարգիս:) — Աֆիմերինոս, ἐφημέρινος (Մխ. Բժիշկ:)

Բարբարոս, βάρβαρος (Մ. Խոր., Կոր., Ճառընտ.:) — Բարբիտոս, βάρβιτος (Մատթ. Ուռհ.:) Նորանշան է i ձայնաւորին ու տառադարձութիւն, եթէ միայն աղաւաղութիւն չէ: — Բոնոս, բոնասոս βόνασος (ցլավայրի) (Մ. Խոր. Աշխ., Վարդան, Մեկն. Ծննդ. եւ ելից:) Միտ դրուի ձայնաւորաց համաձայնման: — Բորբորիտ (Մ. Խոր. 34, 6, ուր ըստ W հին տպագրութիւն մը բորբորիտոն կ'ըն-թեռնու՝ ինչպէս է մեր ունեցած հրատարակու-

թիւնը՝ էջ 256, 3. Գր. Մագ. (անշուշտ Մ. Խորենացիէն) lascivo իմաստով, զոր W իրաւամբք βόρβοροςի հետ կը նոյնացընէ: Կ'երեւայ թէ Մովսէս է այսպէս ածանցողը: — Բրաբէիոն. βραβεῖον (Mikl. 120) (Յովհ. Կթղ., Ներս. Շնորհ. եւն:)

Գանգեղ. γογγύλη (Վարդան՝ Մեկն. Ծնն.:) Եղ = υλ վերջաւորութեան հմմտ. Գ. 4: — Գրամատիկոս, γραμματικὸς (Եւսեբ. Քր. եւ այլ հին թարգմանիչք, Գր. Մագ.:) Հետաքրքրական է աւելորդ ր տառն՝ որ ամէն կոչմանց մէջ կը գտնուի, որ եւ անշուշտ սխալ լսելու արդիւնք կրնայ ըլլալ:

Դելփին (Եզնիկ, 103, 21) դլփին (Գր. Մագ.) δελφίν ((Mikl. 84.) — Դիալոգոս, διάλογος, տիտղոս Ս. Գրիգորի մէկ գործոյն. (Յայսմաւուրք:) — Դիակոն, διάκονος, զոր կը մեկնէ Ն. Լամբր. իբր օտար բառ: — Դիդրախմայ, δίδραχμον (Եզր, Բ, 65. Նաւում, Ե, 15. Եւս. Քր., Անանիա, 33; 16:) — Դիկլիկոն, յունաձեւ կազմութիւն διχλὶς բառին, (Մ. Խոր., Պէտք. Դիոնեսիոս Թրակ. Հրտ. Ջրր-պետ. Mémoires de la société royale des antiquaires Il, 68, 3.) — Դիմոս, δῆμος (Յովհ. Ոսկ, ի Յովհ. Բ, 13. Մխիթ. Գոշ:) — Դեմոսիոն՝ բաղնիքի մը անուն (Անանիա, 7, 8 եւն.) զոր Պատկանեան իրաւամբ, δημόσιον կը մեկնէ: — Դրակոն, δράχων, դրակոնար, δραχονάριον (Գր. Մագ. Mikl. 84.) Յոգնակին՝ դրակոնտես (աղաւաղեալ՝ դրակոնատես) կայ Բարսղի վեցօրէից մէջ: Նուաղականն՝ դրակոնտիկոն (Մ. Խոր. 130, 13) արդէն կանուխ ժամանակաւ աղաւաղած եղած է քրակոնտիկոն. վասն զի վերջին ձեւս արդէն Գր. Մագիստրոս կը գործածէ՝ Մ. Խորենացւոյ նմանած մէկ տեղւոյն մէջ: Պղատոնի Տիմէոսի, (էջ 26 C) հայերէն թարգմանութեան մէջ յունարէն ἔγχαυμα բառին համապատասխանող դրակոնտիկոն բառը, զոր W առոր հետ նոյն կը համեմատէ, յայտնապէս շատ աղաւաղած է:

Եթեր, αἰθὴρ (Պղատ. ի Տիմէոս, Արիստոտէլ՝ Յաղագս Աշխարհի եւն. Գր. Նարեկ., Սարգիս։) — Ելեկտրոնէոն, ելեկտրոն, ἤλεκτρον, (բաց ի Պղատոնի Տիմէի՝ էջ 80C եւն թարգմանութենէն՝ կը գտնուի միայն Գր. Նարեկացւոյ քով։) — Ելեփանդիական՝ (միայն "բորոտութիւն„ բառին հետ կից գործածուած) = ἐλεφαντίασις (Մ. Խոր. 165, 28. Վարք Սեղբ.։) — Եկղեսիաստիկոս, ἐκκλησιαστικὸς (Մ. Խոր. 255, 11։) — Ելլեբորոս, ἐλλέβορος (Բարսղի վեց., Վարդ., Բժշկ.։) — Ենկոմիա, ἐγκώμια (միայն Բուզանդ՝ Դ, 4։) — Եպիմանիկիոն, ἐπιμανίκιον (միայն՝ Ներս. Լամբր.։) — Եքենէ(է)ս, ἐχενηὶς (Բարսղի Վեցօր., Յովհ. Վանական։)

Զմռնիտեան քար = σμυρίτης λίθος (Յովհ. Վան.) Զմռան բառին նմանողութեամբն է որ ն տառը մուծուած է։

Թեղէայ եւ Թեղի (բաց ի Գաղիանոսի թարգմանութենէն կը գտնուի միայն բժշկարանաց եւ Յայսմաւուրքի մէջ) πτελέα բառէն, որ պտղի ձեւով կը գտնուի նաեւ "Երկրաչափատակ„ գրոց մէջ. Նորանշան կը մնայ Պ տառն, թէեւ առանց նման օրինակաց չէ ի սկզբան կրկին բաղաձայնից պարզումը։ Երկրորդ ձեւին մէջ ձայնաւորին կորսուելուն նկատմամբ հմմտ. Պտղոմէոս (Մ. Խոր.։) Bugge (KZ, XXXII, p. 14) Թեղի բառը բնիկ հայերէն կ'ուզէ համարիլ, որ սակայն խնդրական է՝ նկատելով այն տեղերն, ուր այս բառը գործածուած է։ — Թերմոն, θερμὸν (միայն Ճառ.։) — Թիւրակէ (Բուզ. Հրտ. Պատկ. 183, 15. Գր. Նարեկ., Վարդան, Կանոն.) կը յիշուի նաեւ Թեր(ի)ակէ (առանց տեղ մ'ի վկայութիւն կոչելու) θηριακὴ (Mikl. 83., Ձայնաւորին նկատմամբ հմմտ. Գ. 4։

Իրիս, ἶρις (ծիածան). (Անանիա, Գր. Նարեկ։) Հնագոյն ձեւ մը մակաբոյծ հ տառով՝ հիր (Եզեկ. ԻԳ, 6 եւ ԻԷ, 24) եւ մասնկամբ՝ հիրիք

(անդ. Լ, 24։) — Իպոդիակոն, ὑποδιάκονος կիսասարկաւագ. (Ն. Լամբր.։)

Լական (Արիստ, Լաստ.) լկան (Վարք Հար.), լեկան. (Սուտ-Կալ.) λεκάνη. — Լամպտեր, λαμπτὴρ (Մ. Խոր, Պետք. Գր. Նարեկ.։) — Լիթ, λίθος (իբր՝ չափ) (Պիտառութիւնք։) — Լիմոն (Բժշկ. Երկրաչ.) λιμόνιον (du Cange, I 815. Mikl. 106. Hehn, III 390.) — Լինգուրոն, (Ջենոբ Գլ.) լինգուրոն (Վարդան՝ Մեկն. Ելից. Եւ. Նչեցի՝ Մեկն. Եզ.) λιγγούριον. Առաջին ձեւին մէջ ձայնաւորք համաձայնած են, վերջնոյն մէջ ου կորսուած է, եւ չէ անշուշտ առաջնոյն լոկ տառափոխութիւնը։ Տօնականին մէջ կան ասոնցմէ դուրս ղինգուրոն, ղինգիրոն ձեւերը. բայց ի հարկէ այս մանրամասնութեանց վրայ վստահիլ չենք կրնար։

Կալանդք, καλάνδαι (Ճառընտ.։) — Կապելայ, կապելայ, կապելէոն, կապեղէոն, καπηλεία, καπήλιον (Գր. Մաշկեւոր, Մխ. Գոշ, Վարք Հարանց.) կապեղանոց (Ոսկեբ.։) — Կարկին, καρκίνος (Փիլոն, Արիստոտէլ, Գրիգոր Մեկն. Եւ., Տօնական.) կայ նաեւ կարկինոս՝ նախնական նշանակութեամբ (Բարսղի վեցօրեայ, եւ Գր. Նիւսացի. իբրեւ հիւանդութեան մ՚անուն՝ Ներս. Լամբր., Յայսմ.։) — Կիտար (Յովհ. Դամասկ.) կինտար (Յայսմ.) κίδαρις, ե = ι, որուն վրայ հմմտ. յաջորդը։ — Կիթառ, κιθάρα (Յայսմ. Կիլիկ.։) — Կենտոնար, κεντονάριον (Վարք Հարանց։) — Կեստոս (Նոննոս), կեստ (Տօնակ.) κεστὸς. — Կերմա, κέρμα (անդ։) — Կիբիկոն, κυβικὸν (Եւ. Նչեցի, Վարդան՝ Աշխ։) — Կինաբարի, κινάβαρις (Մ. Խոր. Աշխ. 597, 8։) — Կինամոմոն, κινάμωμον (Ելք, Լ, 23 եւ Վարդանայ Մեկն. այս տեղւոյ. Երգ երգոց՝ Գ, 14. Երեմ. Ը, 20։) — Կի(ու)պարի(ս), κυπάρισσος (Մ. Խոր. Թուղթ առ Սահակ Արծր., Յովհ. Կլիմ., Սարգիս եւն։) — Կիւռ, κύριος (Ներս. Շնորհ., Մատթ. Ուռհայեցի, Վարդան.) կիւռ (Ճառընտիրք։) —

Կիտրոն, κίτρον (Ագաթ., Mikl. 82:) — Կլիմ (Վարդան, Միք. ասորի, Ոսկեփոր, Մխիթ. Այարանցի,) կլիմայ (Մ. Խոր. 32, 11 եւն) κλίμα. — Կոկորդիլ (Մ. Խոր. Աշխ. 615, 18) եւ կոկորդիլոս (անդ, 598, 11, ուր 1865ին Հրատարակութիւնն անճահ գիտնականութեամբ մը կրոկոդիլոս կը գրէ. Եւսեբ. Քր., իսկ՝ Փիլոն, Ներս. Լամբր. -դիլոս,) կոկորդեղոս (Յայսմ., Վարք Հարանց), ուր է = ει կը գտնենք ղ տառին առջեւ՝ ինչպէս նաեւ Նեղոս = Νεῖλος (Մ. Խոր. Աշխ.) = κροκόδειλος. — Կոն (որ կը մեկնուի "պատկեր„) = εἰκὼν (Ոսկեփորիկ:)

- Կոնդակ, κοντάκιον (du Cange, I, 705) (Յայսմ., Շիրակեցի, Տօնական:) — Կոնիոն, κώνειον (Եւս. Քր., Մեսրոպ Երէց, Ոսկեբ., Բարսղի Վեցօրեայ:) — Կոնոմ(ոս), οἰκόνομος (Վարք Հար.,) Ստեփ. Օր-պելեան ունի բոլորովին նոր ձեւով՝ եկոնոմոս: Սկըզբան ձայնաւորին կորուստը կը գտնենք նաեւ ի կոն = εἰκὼν, րոպէ = Εὐρώπη (Գր. Նարեկ.) ռաբոն = ἀῤῥαβὼν, պոդրոմ = ἱπποδρομία. — Կոնքեղ (նաեւ ղ տառով՝ Նոննոս.) կոնքիւղ (Վարդան Մեկն. Ելից) κογχύλη. է տառին υ տառին տեղ դրուելուն համմտ. Գ, 4:

Հիւղէ եւ Հիւլէ (Վեց , Փիլոն, Եզնիկ, Ագաթ., Գր. Նարեկ. Վարդան.) ὕλη, զոր ἥλιος ի (արեգակն) հետ շփոթած է Գրիգորի Աստուածաբանի թարգմանիչը: — Հիւղոս = εἶλος (Վարդան՝ Մեկն. Ելից.) ղ տառին առջեւ իւ տառերուն = ει ըլլալուն համմտ. փիւղ = փիղ: — Հիւպերէտ. ὑπηρέτης (Մ. Խոր. 119, ուր Մխիթարեանց ձեռագիրն, ինչպէս նաեւ այն ձեռագիրն՝ զոր համեմատած է Marr Зап. вост. отдѣл. имп. русск. археол. общества, Том. VI, 214) ձայնաւորները հաւասարցնելով՝ Հեպերէտ կը գրեն. Նաեւ Նանայ կը գործածէ այս բառը:

Մագիստրոս, μαγίστρος (Ներս. Շնորհ., Վարք Հարանց:) — Մակեղոն μάκκελον (Եզնիկ, 284,

19 յենլով Ա. Կոր. Ժ, 25 խօսքին՝ τὸ ἐν μακέλλῳ πωλούμενον, ուր սակայն հայ թարգմանութիւնը "ի սպանդանոցի" ունի։ — Մեղեդի, μελῳδία (Պորզ.։) Ձայնաւորները համաձայնած են՝ ինչպէս նաեւ ի Մեսեդի = μεσῳδία. — Մեռոն (Դիոնես. Արիսպ., Գր. Նարեկ., Վարք Հար.) Միւռոն (Յովհ. Իմաստասէր) μύρον. — Մեսեդի, (Յովհ. Իմաստ., Ժամագիրք, Տօնական) ոչ թէ μεσίτηςէն՝ ինչպէս Ս՝ կ'ընդունի, այլ μεσῳδίaէն, համմտ. Միջերգ։ — Մետաղ, μέταλλα. (Մ. Խոր. 174, 23; 220, 10 եւ Սարգ., Գր. Նարեկ., Անանիա։) — Մոլոշ. (Վարք Հար.) մոլոշ(խա), մոլոխիա (բժշկ.) μολόχη. այն որ շ = χ կը տեսնենք՝ համմտ. Bugge, KZ, XXXII, p. 41. — Մորոս, μῶρος (Սիրաք, Ը, 20. Մատթ. Ե. 22. ԻԳ, 12. Կոչ. ընծ. Ոսկեբ., Համամ., Մխիթ. Գոշ, Յովհ. Երզնկ.) ունի նաեւ բազմաթիւ ածանցմունք, օրինակի համար՝ մորոսաբիան (Եզնիկ։)

Յոբելիկ (Սուտ-Կալլիսթ.) եւ հայերէն վերջաւորութեամբ՝ յոբելեան (Վարդան), յոբելի (Ժամկ. Անանիայի,) ὀβελίσκος. Նորանշան է սկիզբն յ տառի մը կցուիլն՝ անշուշտ եբրայեցերէնէ փոխառեալ յոբելեան բառին նմանողութեամբ, որ սակայն բոլորովին ուրիշ նշանակութիւն ունի։

Նոտրոն, Նտրոն, νιτρὸν (Գիրք Վաստակոց, Բժշկ.։)

Շար, σάρος (Եւսեբ. Քր., Մ. Խոր. 8, 28 եւն.։) Նորանշան է շ = σ համեմատութիւնը։ Իրական պատճառներու համար անհնար է մտածել թէ այս բառն ուղղակի ասորեստանեայ šar բառէն փոխառեալ ըլլայ։ Թերեւս շ տառն լոկ գիտնական աղաւաղութեան արդիւնք ըլլայ։ Վասն զի ծանօթ էր շաբաթ = σάββατον, Շամիրամ = Σεμίραμις (համմտ. Hoffmann, Auszüge, n. 1162) բառերէն որ սեմական š տառն յունարէն σ կը դառնայ, անոր համար σի տեղ շ գրուած է

այնպիսի բառի մը մէջ՝ որուն սեմական ծագումն ունենալը ծանօթ էր։

Ողոմպիադ (Եւս. Քր.) ողոմպիադն (Ագաթ.) ողիմպիադն (Կիւրեղ, Կոչ. Ընծ.) ὀλυμπιὰς. — Ոստրէոս (Բարսղի Վեց., Տաղար.) հայացեալ՝ ոստրէ (Պղատ. Տիմէոս) ὄστρεον. — Ունկի (Վարք Հար., Անանիա Շիրակ. 27 եւն, ուր նաեւ ունկի ձեւն ալ կը կարդանք, Գր. Նարեկ.) կայ նաեւ ունկիայ (Վարք Հար.) οὐγκία. Նկ տառերէն յառաջ օ ձայնաւորին ու փոխուիլը կը գտնուի նաեւ ի սպունգ = σπόγγος. Երկրորդ ձեւն ուղղակի միջին լատիներէնէն է, ուստի յետոյ մտած հայերէնին մէջ։ Վեն. Բառագրոց մէջ Վարք Հարանցէն ի վկայութիւն բերուած խօսքը յետամնուտ լուսանցագրութեան մը տպաւորութիւնը կ'ընէ։

Պարաբատէս. (Վարք Գր. Աստուածաբանի, Միքայէլ, Ճառընտ.) παραβάτης, վերադիր Յուլիանոս Ուրացողի։ — Պեւկէ (Սուտ-Կալլ.) պեւկէ եւ՝ խնդրական ծագմամբ՝ պեւկէոս, πεύχη (Ղեւոնդ։) — Պին, պինայ, պինոս, πίννα (Գր. Նիւս., Փիլոն, Բարսեղ, Վարդան.) կայ նաեւ բարդութիւնը՝ պինապահեակ = πιννοτήρης կամ πιννοφύλαξ (անդ։) — Պիւրէոն, πυρεῖον (Ճառընտ., Յայսմ.։) — Պղատան, πλατάνος (Յայսմ.։) — Պօտրոմ, ἱπποδρομία (Մատթ. Ուռհ., WZKM, V, 68.) իսկ օ ձայնաւորին կորստեան համար հմմտ. չոնոմոս, (Mikl. 93.) — Պոետէս (Վարդան), պւետէս (Եփր.) պոետիկոս (Յովհ. Կթղ.), պւետիկոս (Եւս. Քր.) ποιητὴς, ποιητικὸς կամ առանց գաւառական ձեւերն՝ ւ ձայնաւորն կորանցընելով։ Ասով երկու ձայնաւորաց հանդիպելուն՝ առջեւն առնուած է ւ տառը մէջ խոթելով. (հմմտ. Յոլուէ.) այն ատեն ու բաղաձայնն Ւ=υ հնչումն կ'առնու եւ ւ կը գրուի։ — Պրոյք, προὶξ (Մխ. Գօշ, որ նաեւ անպրոյք բառը յօրինած է, Մաշտոց, Մատթ. Ուռհ.։) — Պրոտոստրատոր, πρωτοστράτωρ(միայն

Հռոմկլայի ժողովոյն արձանագրութեանց մէջ՝ ԺԲ դարէն։) — ՊՌՕՏՕՖՌՕՆՏԷՍ, πρωτοφροντιστὴς անգամ մը գործածուած իբրեւ պատուոյ վերադիր եկեղեցականի՝ յիշատակարանի մը մէջ ուշ ժամանակներէն, ինչպէս արդէն տառադարձութիւնը կը ցուցընէ։ — ՊՌՕՍԽՕՄԷ, πρόσχωμεν (Խոսրով. Մեկն. Պատրգի, Կիրակոս Գանձ.։) — ՊՌԱՔՍ, πράξεις (այսինքն՝ ἀποστόλων, Առաքելոց։) (Ոսկեբ. մեկն. Յովհ. Բ. 42. Յովհ. Իմաստ., Սարգիս, Ճառընտ. Ոսկեփորիկ։) — ՊՌԱԿՏՕՌ, πράκτωρ, զոր իբրեւ օտար բառ կը մեկնէ Վարդան Սաղմոսաց Մեկնութեան մէջ։ — ՊՌՕՍՏ, եւ՝ ինչպէս կ'աւանդուի նաեւ՝ ՊՌՕՍՏԷՆ, προόστιον (Սոկրատ, Ճառընտ.)։

ՌԷՏԻՆ, ῥητίνη. (Ծնն. ԼԷ, 25. ԽԳ, 11 Եզեկ. ԻԷ, 17. Երեմ. ԽԶ, 11. Զքր. Կթղ., Գր. Մագ., Գր. Նարեկ., Ներսէս Շնորհ.)։

ՍԱԽՄՈՆԻ, σκαμμωνία (Բարսեղ, Վարդան, Մխ. Գօշ, Գիրք Վաստ.։) — ՍԱՔՌ (միայն կորիւն) σάκρα (Lagarde, St. § 1933) — ՍԱՂԱՄԱՆԴՌ (Նոննոս, Մ. Խոր. Աշխ., Վարդան, Բարսեղ մեկն. Մարկ., Յովհ. Վանակ., Ներսէս Լամբր.) σαλαμάνδρος, — ՍԱՏՌԱՊ. (Ոսկեբ., Մեսր. Երէց.) ժողովրդական ստուգաբանութեամբ կցելով նաեւ պետ բառը՝ ՍԱՏՌԱՊԵՏ (Բուզ. տպ. Վենետ. 67, 13.) σατράπης. Լակարտի հետ (St. § 1956) ընդունիլ թէ շահապետ բառն ազդեցութիւն մ'ըրած ըլլայ սատրապետ բառն յօրինելու՝ աւելորդ է, մանաւանդ որ անոր նշանակութիւնն ալ (յընդհանուրն "կառավարիչ") այնչափ բոլորովին ապահով չէ։ — ՍԵԲԱՍՏՈՍ եւ ՍԵԲԱՍՏԷ = σεβαντὸς եւ σεβαστὴ (Եւս. Քր., Ժմնկ. Անանիայի։) — ՍԷԼԷՍ (Տաղարան) ՍԷԼԻՆ (Վարք Դիոնես., Մատթ. Ուռհ., Յայսմ. վերջինս միշտ ՍԼԷ բառին հետ կցուելով՝ քահանայապետական աթոռը նշանակելու համար) = σέλλιον (du Cange, II, 1350.) — ՍԵՄԱՖՕՌ = ση-

μειογραφρὸς բարդութեան երկրորդ կէսը Հայերէնի թարգմանելով (Եւս. Եկղ. պատմ.) սեմէար σημειάριος (Բուզ.։) — Սէնքէլոս, συγκέλλος (Մատթ. Ուռհ.։) — Սեպեան, հայկական վերջաւորութեամբ, σηπία (Լաստիվ.։) — Սէգնոն (Մ. Խոր., Գր. Նարեկ.) σίγνον (du Cange, II, 1365.) — Սէկղ. σίκλος (Թիւք, Գ, 5. Ղեւտ. ԻԷ, 3. Անանիա 28, 4. Բարսղ. մեկն. Մարկ.։) — Սէղէգն, σίλιγνος (Վարք Հարանց։) — Սէմինդր, σεμίδαλις (Զքր. Ծործորեցի, Դամասկ. մեկն. Եղէց։) վերջաւորութեան համար հմմտ. կղէմինդր = χεραμὶς. — Սէրայ, σεῖρα (Վարք Հար., Ոսկեփոր.։) — Սէ-ղ(ղ)աբայ (Մ. Խոր., Կորիւն, Գր. Արշարունի, Գր. Նարեկ. եւն.) = συλλαβὴ. — Սէ-նէքոսական, συνεχῶς, հայերէն մանկաւ. (Գր. Մագ.։) — Սնդոն, (Ն. Լամբր., Վարք Հար., Կիլիկ. Մաշտ.) σινδὼν. ըստ ձայնական օրինաց կորսուած է ի ձայնաւորը։ — Սպոնդէք, σπουδεῖοι (ճգնութեան մէջ եռանդուն) (Մ. Խոր. 240, 7 վ. 270, 11 վ., Մխ. Գոշ։) — Ստադէոն, (Եւս. Քր., Սարգիս, Պղատոնի Մինովս.) ստադ (Ճառ., Գր. Մագ.) στάδιον. — Ստէ-րակ (Մ. Խոր. 602, 2) որմէ ստէ-րակեայ, στύραξ. — Ստէք (Ոսկեբ.) = στοιχεῖον (Ներս. Լամբր. Վարդան) στίχος, որմէ՝ ստէքերամբ (Կոչ. Ընծ.)։ — Ստողոգէական սաղմոս στιχολογία (Մ. Քերթող, Ճառընտ.։) — Ստոյա, (Գրծ. ԺԷ, 18, այսինքն "Ստոյիկեանց" Փիլոն, Ներս. Լամբր.) στοὰ. — Ստրոբիլէ, στρόβιλος, հայկական վերջաւորութեամբ (Ճառընտիրք)։

Տապեղ, τάβλα (Անանիա Շիրակացի.) կայ նաեւ տապալէ (Եւս. Եկղ. Պատմ.։) Երկու ձեւերուն մէջն ալ աչքի կը զարնէ այն որ պ = β կը տեսնենք. — Տարտարոս, τάρταρος (Յոբ. Խ, 15. Փիլոն, Նոննոս, Յովհ. Մանդակ. Յովհ. Կթղ., Սարգիս, Ճառընտ.։) — Տետր, τετρὰς (Վարդան, Մարաթացի,) տետրակ, τετρακτὸς (Մաշտոց։) —

Տետրասքել, τετρασκελὴς (Ղազ. Փարպ., Ճառընտ.:) — Տիպ, սեռ. տպի, τύπος (Փիլոն եւ այլ թարգմանիչք, Ճառընտ., Ն. Շնորհ., Գր. Նարեկ.:) — Տիտղոս (Գր. Մագ.,) տիտլոս (Մ. Գօշ) τίτλος. — Տիպտիքոն, δίπτυχος (Ն. Լամբր.:) — Տրիտոն, τρίτον (որ ընդ մէջ ջերմն. Գր. Մագ.:) Տրապեզ, τράπεζα (Ստեփ. Օրպ., Յովհ. Կթղ., Թէոդոր Քռթենաւոր (Mikl. 136:) — Տրապեզիտ (Եւս. Եկղ. Պատմ.) տրապեզիտ (Ոսկեբ., Խորով) τραπεζίτης (Մ. Կաղանկատուացւոյ քով՝ "սեղանակից" իմաստով:)

Ռոպէ, ῥοπὴ (Բարսղի վեցօրեայ, Անանիա Շիրակացի, Յովհ. Սարկ.,) կրճատեալ՝ րոպ (Գր. Նարեկ:) Ուստի ծագած է "տիեզերք" նշանակութիւնն այս բառին՝ յիշեալ հեղինակին, ինչպէս նաեւ Ն. Շնորհալւոյ եւ Շարակնոցին մէջ:

Փագրոս, φάγρος (Գր. Մագիստրոս:) — Փակեղն, φάκελλος (Գր. Մագ., որ բացայայտ յունարէն բառ կը հռչակէ զայս. Վարք Հար., Ոսկիփորիկ, Ստ. Օրպ., Մխ. Գօշ:) — Փալարիս, φαλαρὶς (Համամ Արեւելցի:) -իս վերջաւորութիւն՝ ուր յոյնը -ις կը վերջաւորէ, համեմատ է "հիրիկ" բառի վերջաւորութեան հետ = ἶρις. — Փիւլաք, φύλαξ (Վարք Դիոնեսի, Ճառընտ. Տօնակ:) — Փիւլակէ, φυλακὴ (Բուզանդ, Հրտ. Վենետ. էջ 87:) — Փոկ, φώκη (Բարսղի Վեցօրեայ, Եզնիկ, Յովհ. Սարկ.:) — Փսալտ (Ա. Եզր, Ը, 5. Ներս. Լամբր., Յովհ. Իմաստ.) ψάλτης. — Փսիաթ, ψίαθος (Վարք Հար.), որմէ՝ փսիաթեայ եւ փսիաթին (անդ:) — Քաղբան χαλβάνη (Ելք, Լ. 34. Սիրաք ԺԴ, 2. Բարսեղ:) — Քարադր, χαραδριὸς (Ղեւ. ԺԱ, 19. Երկ. Օր. ԺԴ, 18. Եպիփ., Մխ. Գօշ, Վարդան:) — Քիմերոն, (Մ. Խոր. 58, 7,) ուր Ն. Մառին համեմատած ձեռագիրը (Зап. անդ, էջ 186 քիմերոն կ'ընթեռնու՝ համեմատ Wի,) χειμερινὸς. այն որ իա = ει կը տեսնենք՝ հմմտ. Գ, 4:

— Քիմիա, χυμεία (Ոսկեփորիկ:) — Քրոնիկոն, χρονικὸν (Եւսեբ., Սամուէլ Երէց, Ոսկեբ., Անանիա Շիրակացի:)

---

Երրորդ խումբ մը կը կազմեն այն բառերն՝ որոնք միայն թարգմանութեանց մէջ կը գտնուին: Այս ամէնուն մեծ մասին համար կրնանք ըսել թէ այս բառերն երբէք կենդանի լեզուին վերաբերած չեն: Թարգմանիչք զատոնք իրենց առջեւն եղած բնագիրներէն առած գործածած են, վասն զի կամ անոնց համապատասխանող հայերէն բառեր արդեամբք չունէին, եւ կամ հոգ չէին տարած գտնելու: Այս կարգին կը վերաբերին նաեւ այն եբրայական բառերն, զորոնք Եօթանասնից թարգմանիչք սկզբնագրէն անփոփոխ առին պահեցին տառադարձութեամբ, եւ որոնք այսպէսով անցած են նաեւ Ս. Գրոց հայերէն թարգմանութեան: Սակայն աւելորդ էր զատոնք աւ հոս ի մէջ բերել, վասն զի անոնցմէ մեր նպատակին համար բան մը չենք սորվէր:

Աքրան, ἄκρα (Ա. Մակ. Թ, 52, 53. ԺԶ. 6.) որմէ՝ աքրացիք, οἱ τῆς ἄκρας (այսինքն՝ ակառնացիք. Ա. Մակ. ԺԳ, 7. Բ. Մակ. ԺԷ, 31:) — Ամբոտիս, ἄμπωτις (Նոննոս, Արիստոտէլ՝ Յաղագս աշխարհի:) — Անտիքրիստոս, ἀντίχριστος (Ոսկ., Գր. Աստուածաբան, Դամաս., որուն տեղ բուն մատենագիրք Նեռն բառը կը գործածեն:)

Բալիստր, βαλλίστρα (Ա. Մակ. Զ, 51.) իսկ Երեմ. Թ, 7 նաեւ յունարէն βολὴ բառին տեղ: — Բուբաղոն, βούβαλος (Վարք Հար. Mikl. 80:)

Դեմարքոս, δήμαρχος (Յայսմ. Կիլիկ.:)

Եբենոս, ἔβενος (Պորփիւր:) — Եթիա, αἴθυια (Փիլոն:) — Եկղեսիաստէս, ἐκκλησιαστὴς (Ժող. Ա, 1. Կոչ. ընծ.:) — Ենքեր, ἐγχείριον (Վարք Հարանց:) — Եպարքոս (Վարք Հար., Ոսկեբ.) ἔπαρχος. — Եւրակիլոն, εὐρακύδων (Գործք,

ԻԷ, 14։) Յունարէն բառս այլեւայլ կերպով կ'աւանդուի. Հայերէնն ամենէն աւելի կը համաձայնի Lachmannի εὐραχύλων ձեւին հետ։ — Եռմոս եւ երմոս, εἱρμος (Վարք Հարանց։) — Եքսերոն, ἐχθηρὸς (Նաում, ԺԳ, 37 եւ Գ, 3, ուր կայ՝ շատ աղաւաղութիւն կրած՝ տարբերութիւն մ'ընթերցուածոյ՝ եքսիւրոն. տես Գ, 4։)

Զմելին, σμιλίον (Երմ. ԼԱ, 23,) այլ օր. զմելին, իսկ Մխիթարայ այս տեղւոյ մեկնութեան մէջ՝ զմեղէն։ — Զօնար, ζωνάριον (Ոսկեբ.։)

Լաբիւրինթոս (Գր. Նազիանզացի), լաբիրինթ (Նոննոս), λαβύρινθος։ Եթէ Տ տառին աւելնալը պէտք է այնպէս կշռադատել՝ ինչպէս նկատեցինք կղմինտր բառին վրայ, այն ատեն առաջին ձեւն երկբորդին համեմատ կազմուած է։

Կանկեղն եւ ճանկեղան (Կիւրեղ) κάγκελον (ոչ թէ κίγκλης ըստ W, որ անշուշտ κιγκλὶς կ'ուզէ հասկընալ։) — Կենդրոն, κέντρον (Եւկղեդ.։) — Կիպրոս, κύπρος (Երգ Երգոց, Ա, 13. Գ. 13։) — Կիբոս, κύβος (Յայտն. ԻԱ; 16։) — Կիփոս, σκύφος (Յայսմ.։) Բառասկզբան համար հմմտ. ճեսոր = սճեսոր։ — Կոն, χῶνος (Գր. Նիւս.։) — Կոնք, κόγχη (Երկ. Օր. Զ, 38. Թիւք, Է, 9. Յովհ. ԺԳ, 5։)

Մանդիա, μανδύας (Կիւրղի մեկն. Թագ.։) — Մանեակ, μανιάκης (Ծն. ԻԱ, 42. Դան. Ե. 7, 16, 19. Ա Եզր, Գ, 6. Ժողով. ԺԲ, 6, Երեմ. ԺԲ, 21. հմմտ. Lag. Ges. Abt. 40, 1։) — Մաքեղ, μαχέλη (Վարք Հար. Lag. St. § 1457։) — Մելոն, μῆλον, մելոբոտ, μηλόβοτος. մելովտէ μηλωτὴ (Նոննոս) — Միմոս, μίμος (Վարք Հար.) մի(ւ)ստե(ր)ոն, μυστήριον (Նոննոս)։ — Մնաս (Ա Եզր, Գ, 45, Նաում Է, 71. Եզեկ. ԽԵ, 12. Ղուկ. ԺԹ, 13. Պղատոնի Մինովս, Անանիա Շիրակ. 28, 18) μνᾶ.

Նաստիկ, ναστίσκος (Վարք Հար.:) — Նարդոս (Երգ Երգոց, Ա, 11. Դ, 13, 14. Գր. Նիւս. Մեկն. նոյն տեղւոյ.) Նարդեան (Մարկ. ԺԴ, 3. Յովհ. ԺԲ, 3.) Նարդեա (Փիլոն) Նարդնեա (Տաղարան, որուն երկրորդ ն տառը ջնջելու է.) νάρδος. — Նարկա (Փիլոն), Ներկեա (Բարսղի Վեցօր.) νάρκα, νάρκη.

Շլորոս, χλωρὸς (Յայտն. Ը, 8:)

Ոճար, ὄαρ, օճարիստես, ὀαριστὴς (Պղատոնի Մինովս 319 D:)

Պաղատիա, պաղատիկ (Ա Թագ. ԻԲ, 18. Լ, 12. Գ Թագ. Ի, 7. Յուդիթ Ժ, 5.) παλάθη Աչքի կը զարնէ այն որ տ դրուած է = ϑ, նոյնպէս նաեւ առաջին ձեւին վերջաւորութիւնը: — Պանթեր, πάνθηρ (Եպիփան:) — Պանկրատ(իոն) (Պղատոնի Օրէնք, Եւս. Քր.) παγκράτιον. — Պաքսիմատ, πάξυμας (Վարք Հար..) — Պելագոս, πέλαγος (Աշխարհագրական անուանց մէջ. Մ. Խոր. Աշխ. 595: 3. 596, 19. Թուղթ դաշանց՝ ԺԴ դարէն:) — Պերիդեքսոն կամ պերիդեքսիոն, περιδέξιον (անուն հնդկական ծառի մը, Եպիփան:) — Պիրամոիդես, πυραμοειδὴς (Գր. Նիւս.:) — Պիրամիդ, πυραμὶς (Եւս. Քր. Նոննոս, նոյն նշանակութեամբ զոր ունի նախընթացը Գր. Նիւսացւոյ քով:) — Պլակոնդ (Ոսկեբ., Վարք Հար.) πλακοῦς. — Պոդերէ, ποδήρης (Դամասկ.:) — Պոմպիլոս, πομπίλος (Փիլոն:) — Պտղէ, πτελέα (Գիրք Վաստ.:) — Պրետոր, πραιτώριον (Վարք Հար.:)

Ռաքիա, ῥαχία (Նոննոս):

Սալոն ("յիմար" նշանակութեամբ իբր վերադիր) σαλὸς բառէն կազմուած. (անդ:) — Սատիրական, σατυρικὸς (Պղատ. Մինովս:) — Սեբենէ, σεβένιος (Վարք Հար.:) — Սիկարեան, σικάριος (Գործ. ԻԱ, 38:) — Սինկղիտիկոս, συγκλητικὸς (Եւս. Քր., Վարք Հար.:) — Սիպէ σηπία (Գր. Նիւս.:) — Սիմբոլոն, σύμβολον (Մեկն. Կիւրղ.:)

— Սքալինոն, σχαληνὸς (Գր. Նիւս.:) — Ստոմ, στόμα (Սեբերիանոս:) — Ստրոբիղոն, στρόβιλος (Եփրեմ:) — Սփէր, σφαῖρα (Դամասկ.:)

Տալարոն, ταλάριον (Մեկն. Կիւրղ.:) Միտ դնելու է ձայնաւորաց համաձայնման եւ դողդողատառից տեղափոխութեան: — Տաքսատ, ταξείδιον (Եփրեմ.) — Տելետէ, τελετὴ (Մաքսիմոս Մեկն. Դիոն. Արիսպ.:) — Տէւթիդես, τευθίδες (երկրորդ ե տառը ջնջելու է. Գր. Նիւսացի:) — Տրմես, trimessis (Վարք Հար., Անանիա Շիր. 27, 15:) — Տրոքիլոս, τρόχιλος (Փիլոն:)

Քարակ, χάραξ (Բ. Մակ. ԺԲ, 17. Աթանաս:) — Քարիբդիս, Χάρυβδις (Նոննոս:) — Քիղոս, χύλος (անդ:) — Քրիսոպրասոս, χρυσόπρασος (Յայտն. ԻԱ. 20. Ներս. Լամբր. Մեկն. այս տեղւոյն:) — Քրոնոգրափէոս, χρονογραφεὺς (Եփրեմ.) երկրորդ օ ձայնաւորը կորսուած կ'երեւայ տարբերէնէն անցնելով:

Կան վերջապէս կարգ մը բառեր որ միայն այս կամ այն թարգմանութեանց մէջ կը տեսնուին կամ ուղղակի յունական աղբիւրներէն քաղող գործքերու մէջ: Այսպիսի պարզ տառադարձութիւնք Փիլոնի եւ այլոց քով արդէն վերջին ցուցակին մէջ ալ կը գտնուէին: Բայց կ'ուզենք հոս ալ ի վերջոյ այս կարգի քանի մը մեծ բառախմբեր տողել, եւ այն՝ դասաւորելով այն գրոց համեմատ, որոց մէջ կը գտնուին:

*Ա. Եւսեբեայ Քրոնիկոն, Հրատ. Աւգերեան:*

Ագոնոթետայք եւ ոլիմպոթետայք, Ա, 131: Կարելի էր յօժարիլ այն կարծեաց թէ վերջին « տառն առաջնէն առնուած ըլլայ. սակայն հմմտ. մագնետես = μαγνήτης. — Գոնգ, γόγγος, Ա, 10, 6. գոնգիարիոն, γογγιάριον, Բ, 102, 14: — Դիկտատոր,

δικτάτωρ, Ա. 88. Բ. 117 — Նէր, νεῖρος, Ա. 6, 19, 23: — Ոպլիտ, ὁπλίτης: — Պենտաթլոն. πένταθλος: — Տրիէր, τριήρης.

*Բ. Սուտ-Արիստոտէլ՝ Յաղագս աշխարհի:*

Արգեստէս, ἀργέστης. — Արգիտէսք, ἀργῆτες. *Թարգմանիչը յունարէնին յոգնակիի վերջաւորութիւնը շփոթած է* -της *մասնկան հետ, ուստի աւելցուցեր է նաեւ -ք հայերէն յոգնակիանիշը:* — Արքտիկոն, ἀρκτικὸς. — Դիատոն, διάττων. — Էլիք, ἕλιξ. — Էպիկլինտէսք, ἐπικλίντης. — Եւրոնոտոս, εὐρόνοτος. — Եւրոս, εὖρος. — Զեփիւրոս, ζέφυρος. — Թիւէլլա, θυέλλα. — Լամպադք, λαμπάδες. — Լիփս, λὶψ. — Կեկիաս, καικίας. — Կերաւնոս, κεραυνὸς. — Պալմատիան, πάλματίας. — Պրեստէր, կամ նաեւ պրեստէր, πρηστὴρ. — Սել(աս), σέλας. — Սկիպտոս, σκηπτὸς. — Վորէ, βορέας. — Ռաբդոս, ῥαβδὸς.

*Գ. Սուտ-Կալիսթենէս:*

Բիբլոս, βύβλος. — Գալլոս, γάλλος. — Լիբուռնեայ, λιβυρνὶς. — Լիգդինոս, λύγδινος. (5, 21.) — Հորմայ, ὅρμος. — Սկիտեայ, σκῦτος. — Տոքսիկոն, τοξικὸς.

*Դ. Բարսղի Վեցօրեայ:*

Ալկիոն, ἀλκυὼν. — Բոմբիւլոս, βομβύλιος. — Էնքեղէս, ἐγχέλεις. — Էփենէ, ἡ φήνη, *որուն մէջ յունարէնին յօդը սխալմամբ բառին մասը համարուած է:* — Էքինոս, ἐχῖνος (*այսինքն* θαλάττιος, *ծովային:*) (Mikl. 94.) W *սխալմամբ նոյն կը համարի զայս Էքենէս բառին հետ* (*Յովհ. Վանական*), *որ աւելի նոյն է Վեցօրէի Էքենէիս բառին հետ, զորոնք իրարմէ կ'անջատէ* W: — Կարիտոս, χαρὶς. — Կորալլիոն, χοράλλιον, (Mikl. 100.) — Կտենք, χτένες. — Մենդոս, μαινὶς. — Պիտոսա,

πίτυς. — Պօղէպօդ(եօ), πολύπους. — Պրէօն, πρίων. — Սեղաք, σέλαχος. — Ստրօմ, στρόμβος. — Տրէգօն, στριγὼν. — Փսէն, ψῆν.

### Ե. Անանիա Շիրակացի:

(Հրատ. Պատկանեան, Պետրբ. 1877:)

Անտլէտէրէօն, ἀντλητήριον, 31, 25: — Ապօրէօմայ, ἀπόρρυμα 31, 8: — Արտաբաս, ἀρτάβη 31, 20: — Ասարէօն, ἀσσάριον, 27, 4. Եւս. Քր. Բ, 102: — Բէսեքստօս, bissextus 20, 16: — Բէսէն (30, 12) որ հայերէն չէր բառով կը մեկնուի, ուստի ոչ βίχιον բառն է՝ ինչպէս Պատկանեան կ'ընդունի, եւ ոչ πυξίον, ինչպէս W կ'ըսէ, այլ βήσιον. (du Cange, I, 196:) — Գրամար, γραμμάριον 27, 13. — Դրաքմէ, δραχμὴ 27 եւն, ուր W (անշուշտ ըստ ձեռագրաց) դրաքմէ կ'ընթեռնու. Հմմտ. գղղ. dragme. — Զօդէակօս, ζωδιακὸς. — Կաբօս. χάβος, 31, 7. — Կապէտօն, captium exactio 28, 1. 33, 8. — Կերատ, κεράτιον 27, 10. — Կիւաթօս, χύαθος 3, 24. — Կոտէլ, κοτύλη 30, 9. — Կորոս, χορὸς 31, 22. — Լեպտօն, λέπτων 27, 5: — Մեղիարէօ, milliarius 28, 6: — Մէտ (W, Պատկ. մետ 28, 5) որ կ'ըսուի թէ յունարէն համազօրն ըլլայ եբրայական שקל բառին եւ լատիներէն milliusի, զոր Պատկանեան տարակուսելով՝ թէեւ ապահովապէս սխալ՝ կը մեկնէ μέτρον բառով, որ երբեք որոշ չափի տեսակ մը չի ցուցըներ: Բառն յայտնապէս շատ աղաւաղած է: — Մոդ, μόδιος 31, 7: — Մոնադ, μονὰς 29, 4: — Նոմիսմայ, νόμισμα 28, 31: — Ոբօղօս, ὄβολος 27, 5 եւն: — Պարօփսիդօ, παροψὶς 36, 11: — Պեղիկէօ կամ պեդիկէօ, (ըստ W II, 645 պեղէօէ կամ պեղիկէօ. այս բառը կը ցուցընէ որ Անանիա այնպիսի յունարէն բնագրէ մ'առած է, որուն մէջ Δ եւ Λ որոշ չէին տարբերեր. —) = $^{1}/_{6}$ ξέστης. Միայն πελίνη բառը համկընալու է, որ ըստ Steph.

Thes. որ դժբախտաբար իւր աղբիւրը չի յիշեր, տատիկեցի չափ մ'ըլլալու է. դժուարաւ πέλιξ կամ πελίκη (W) — Պիմինեայ = 1/6 ξέστης, անշուշտ աղաւաղած է ἡ ἡμίνη բառերէն (H եւ Π գիրաւ կրնային շփոթուիլ։) — Սաբիթայ, σαβιθὰ 31, 12. — Սատոն, σάτον 31, 15։ — Սեմիս, semis 27, 15։ — Տրիւբլիոն, τρυβλίον 30, 10։ — Փոսսուրա, φωσσούρα 50, 3։ — Քաղկոս, χαλκοὺς 27, 4 եւն.։ — Քուղայ, χοῦς 31, 5։ — Քսեստ, ξέστης 30, 2։

*Զ. Մխ. Գօշի Դատաստանագիրք։*

Ապապապ, ἀποπάππας. — Ապոդիքս, ἀπόδειξις. — Դեքանիոն, δεχανίων (du Cange, I, 276.) — Դիաթէկ, διαθήκη, աստուածաբանական իմաստով իբրեւ յունարէն բառ անգամ մը յիշուած է Սամուէլ Երիցուէն։ — Դիար, τιάρα. — Եպիտրոպոս, ἐτίτροπος (Mikl. 94, 118.) — Պրոթեսա(միոս) πρόθεσις, προθέσμιος. — Ռեհոն, ռէհոն, ἀρραβὼν, ինչպէս ձայնական հանգամանքը կը ցուցընէ՝ ժողովրդական է բառս, եւ միայն ըստ պատահման չէ յիշատակուած այլուր. (Mikl. 75.) — Իսոն, ἶσον. — Մանկլաւ, μαγκλάβιον (du Cange, I, 846.) — Վաղար, φάλαρα. — Սինտեկնոս, σύντεχνος.

---

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

Յունարէնէ փոխառեալ բառերուն կից նպատակայարմար պիտի ըլլայ ի մի հաւաքել նաեւ լատիներէն բառերէն անոնք, որ յունարէնէն անցած չեն եւ սոսկ չեն մնած վերի ցուցակներուն մէջ, ինչպէս նաեւ այն սակաւաթիւ ռոմանական բառերն, որոնք յետնագոյն գրաւոր-Հայերէնին մէջ մուտ գտած են, որպէս զի սոսկ ընդհանուր գաղափար մ'ունենանք Հայերէնի բոլոր արեւմտեան տարերաց վրայ։

Բարակ, Փարակ, baracco, (Bugge, I. F. I. 455.) — Բեկղ, baculus (Ոսկեփոր։) Կ'երեւայ թէ W լատիներէնին համեմատ սխալ յօրինած է բեկուղ ձեւն, որ չի յարմարիր բեկեղք՝ գործիականին որ ձեւով միայն բառս աւանդուած է։ — Բրինջ, prince (Մատթ. Ուռհ. Թուղթ Գրիգորի Դ՝ † 1193, Վահրամ, Հեթում։) — Գունդստաբլ, connétable (Ներս. Լամբր.։) — Դոլաբր, dolabra (միայն Դիոնես. Թրակացի՝ 38, 7 իբր թարգմանութիւն յունարէն μάχαιραին։) — Դուքս, dux (Վարք Հար., Խօսք Թէոփիլեայ.։) — Էքսփլորատորէս exploratores, իբր լատինական բառ յիշուած Սոոյն-կալխթենեայ մէջ (2, 15։) — Լադան, ladano (Մաշտոց որ ԺԴ դարու լատիներէնէ թարգմանուած է։) — Լատրատել, latrare, ոռնալ (որով ատել բային հետ բառախաղ մը յօրինած է Թովմաս Մեծոփեցի։) — Կապիտան, capitano (Hübschmann, ZDMG, XXXVIII, p. 432.) — Կիստեռն, cisterna (Անանիա Շիրակացի՝ 7, 9։) — Մարքիզ, marchese (Վահրամ։) — Պալլիոմ, pallium (Թերթեւս յունարէնէ՝ du Cange, I, 1085. Ն. Լամբր.։) — Պղէմբատ, plumbatura (Ճառընտ.։) — Պուլ, Մարթին) վուլ (անդ եւ Վահրամ) bulla. — Պրիմիկիուր, primicerius (Ճառընտ., Յայսմ.։) — Պրոպոզիտոսութիւն, praepositusի պաշտօն։ (Ճառընտ.։) — Ջաբրոն, chaperon (Մխիթ. Ապարանցի, Մարթին.։) — Սաքուլայ, sacculus (քահանայական հանդերձ մը, Ներս. Լամբր.։) — Սենատոր, senator (Ճառընտիրք։) — Սիգել կամ սիգլ, sigillum (Մարթին.։) — Սիտղ, situla (Բարսղի Մեկն. Մարկոսի։) — Սկեպտոր, exceptor (Յայսմ.։) — Տրիբուն, tribunus (Մեկն. Կիւրղի, Ճառընտ., Մխիթ. Գօշ. Յայսմ.։) — Վարկայ, barca (կը յիշէ միայն Ջախջախեան։) — Վէլար, velarium (Ներս. Լամբր.։) — Փալկոն, falco (Ճառընտիրք։)

---

Ի վախճանի կ'ուզենք հոս ի մի հաւաքուած ներկայացընել այն ամէն ձայնական երեւոյթները, որոնք կը տեսնուին յունական բառերու հայերէնի անցած ժամանակ:

## Ա. ՁԱՅՆԱՒՈՐՆԵՐ:

### Ա. Ձայնաւորաց փոփոխութիւնք:

Յունական α կը գտնենք է եղած՝ ստէփղին = σταφύλινος.

Յունական ι կը գտնենք է եղած՝

1. ս տառէն յառաջ կրկնափակ վանկերու մէջ՝ սոփէստ = σοφιστὴς, մագէստրէանոս = μαγιστριανὸς.

2. Քմականներէն յառաջ եւ ետքը՝ դէկտատոր = δικτάτωρ, էքթերան = ἰχθηρὸς, կէդար = κίδαρις, կէթառ = κιθάρα.

3. լ տառէն յառաջ՝ զմէլին = σμιλίον, մէլիարէս = milliarius.

Յունական η եւ ει (երկուքն ալ i հնչուելով) ի- հնչման կ'աղօտանան՝

1. ր տառին առջեւ՝ Բէրոս = Βηρωσσὸς, բէրեղ, βηρυλλὸς, թէրակէ = θηριακὴ, էքթիրան եւ էքթերան = ἰχθηρὸς, քէմերոն = χειμερινὸς. Անգամ մը e եղած է ու՝ պրիմիկուր = primicerius.

2. ղ տառին առջեւ՝ հիղոս = εἵλως. գաղափիղ, գառափիղ. Հմմտ. փիալ եւ փիղ:

Յունական ι եղած է ու՝ բարբուտ = βάρβιθος.

Յունական ο եղած է ու՝ ունդականէ մը յառաջ, երբ քմականի հետ է. ունկի = ὀγχία, սպունգ = σπόγγος.

Յունական υ (իբր u հնչուելով) եղած է ո, այսպէս՝ ասորի = Ἀσσύριος, ր տառին ազդեցութեամբ:

Յունական υ եղած է՝ ե,

1. ղ տառին առջեւ՝ բիւրեղ = βήρυλλος. գոնգեղ = γογγύλη. կոնքեղ = κογχύλη. Համմտ. Բաբելոն = Βαβυλὼν (Մ. Խոր.:)

2. ռ տառին առջեւ՝ լիբեռնեայք, Λιβυρνίδες, մեռոն = μύρον.

3. կ տառէն ետքը՝ սկեթեա եւ սկեթեա = σκῦτος.

Յունական υ եղած է ի՝

1. կ տառէն ետքը՝ կիպարիս = κυπάρισσος, կիբիկոն = κυβικὸν, կիպրոս = κύπρος, կիւր = κύριος, կիրակէ = κυριακὴ.

2. կ տառէն յառաջ՝ լիկդինոս = λύγδινος.

3. Ռնգականէ մը յառաջ, երբ քմական մը հետն է՝ լինգիւրոն = λυγγούριον (թէեւ կայ նաեւ λιγγούριον), սինկղիտոս = σύγκλητος.

Յունական ω (ο) եղած է ու — ծանօթ ձայնական օրինաց համեմատ՝ զունար = ζωνάριον, տումար = τομάριον.

## Բ. Ձայնաւորաց հանդիպում (hiatus):

Ձայնաւորաց իրարու հանդիպիլը կը խափանուի՝

1. Տկարագոյն ձայնաւորին դուրս իյնալովը. թիրակէ = θηριακὴ, թատր = θέατρον, պրաստ = προάστιον, սաղոն = σαλάων.

2. Երկուքին մէջ – կամ վ մը մուծանելով, հալուէ = ἀλόη, թեւելլա = θυέλλα, պոետէս = πο(ι)ητὴς, օվար = ὄαρ. Համմտ. սաբաովթ = σαβαὼθ, թեւէ = θεε = אֹה (Ա. Թագ. ԺԴ, 28.) անգամ մ'ալ յ կը տեսնենք մուծուած՝ ստոյա = στοὰ, Համմտ. փայեթոն = φαέθων (Եւսեբիոս:)

3. Աղօտագոյն ձայնաւորն բաղաձայն ընելով՝ յակինթ = ὑάκινθος (?)

Գ. Svarabhakti

Կը տեսնենք ր եւ ղ տառերէն յառաջ՝ ն
իբր է, այսպէս՝ գալագեղ = γαλεάγρα, եկեղեցի
ἐκκλησία, տաբեղ = τάβλα. — իբր ա՝ Հեթանոս
ἔθνος. — իբր ո (°.)՝ ստոման = στάμνος. —
գակից ձայներու հետ համաձայնելով՝ ստորոփէն
στρόβιλος, կարակին = καρκίνος.

Դ. Համաձայնում (assimilation).

Երկու կամ շատ՝ իրարու յաջորդող վանկե
ձայնաւորներն իրարու հետ նոյնացընելը շատ
ճախ կը գտնենք, որ նաեւ բնիկ բառերու մէջ
ճախադէպ է. այսպէս՝ լական = λεκάνη. լինգուր
λιγγούριον. մեղեդի = μελῳδία. մասեդի = μεσῳ
մեքենայ եւ մեքանայ = μηχανή. մոմոս = μί
ողոգոմեան = εὐλογημένη. պատաքրոս = πο
γρός. սենգելոս = σύγκελλος. ստրոբողոս = στ
βιλος. փիլիսոփայ = φιλόσοφος. Յունարէնի
ալ տեսնուած նման երեւոյթներուն վրայ
Joh. Schmidt, KZ, XXXII, 321 ff.

Ե. Կորուստ ձայնաւորաց

1. Ըստ ծանօթ ձայնական օրինաց ւ ե
անշեշտ վանկերու մէջ դուրս կ'իյնան, այսպ
նտրոն = νίτρον. պնակ = πίναξ. անդոն =
δών. տրմես trimessis. մղոն μίλιον. լամբրինթ λα
ρινθος. սկտեղ σκουτέλα. սրինգ σύριγξ. սփ
σφυρίς. զմռնիտես σμυρνίτης.

2. Յանուցիր կը տեսնենք նաեւ ε եւ ο ձ
նաւորներն ղ տառին առջեւն կորսուած՝ տլփին
φὶς, պղել πτελέα, պղղոմէոս πτολομαῖος, կղմ
κεραμὶς.

3. Շեշտեալ վանկէն առաջ e եւ o ձայն
որք դուրս ինկած են ա տառէն յառաջ՝ կոմս com
ստամոքս στόμαχος.

4. Բառասկզբան ձայնաւորի կորուստ
ցուցընեն՝ ռեհան ἀρραβὼν, կոն = εἰκὼν, կոնոմ

οἰκόνομος, պօդրոմ = ἱππόδρομος, սկեպտոր = exceptor, նաբոլոն = ἀνάβολον, լոգոմէն = εὐλογημένη.

### Զ. Տառափոխութիւն (metathesis)

Ձայնաւորի փոխանակութիւն կը տեսնենք հետեւեալ բառերուն մէջ՝ ստամոքս = στόμαχος, եւ թերեւս ստոման = στάμνος. իսկ բիւրեղ = βήρυλλος բառին մէջ առ երեւոյթ միայն այնպէս է

## Բ. ԲԱՂԱՁԱՅՆՔ:

### Ա. Համր տառեր (mutae)

#### ա) Թաւք

1. Թաւերու տեղափոխութիւն կը ցուցընէ ակաթիս = ἀχάτης.

2. φ տառն բ եղած կը գտնենք՝ դաբնի = δάφνη, դելբին = δελφὶς (երկուքն ալ նայի մը քով. հմմտ. դաբր եւ դափր, բայց նաեւ յաբեթ = Ἰαφὲθ առ Մ. Խոր., ուր թերեւս յերեւան կու գայ վանկասկզբան եւ վանկավերջի թաւ ըլլալուն դէմ եղած ծանօթ հակամիտութիւնը). անգամ մը վ եղած կը գտնենք՝ վալար = φάλαρα.

3. χ կը տեսնենք շ եղած՝ արշիմանդրիտ = ἀρχιμανδρίτης, շլոռոս = χλωρὸς, մոլոշ = μολόχη. բառավերջին՝ ք եղած կը տեսնենք՝ պատրիարք = πατριάρχης (հմմտ. ղօգ եւ ղօք) եւ մ տառէն յառաջ՝ դրաքմէ = δραχμὴ.

4. ϑ եղած է՝ դ՝ բադրոն = βάϑρον, ընդհակառակն՝ կանթեղ = χανδήλα.

#### բ) Միջակ տառեր (mediae)

1. δ եղած է ր՝ լամբար = λαμπαδ-, հմմտ. Hübschmann, ZDMG, XXXVI, 133.

2. β եղած է մ՝ առեմոն = ἀρραβὼν.

### Բ. Նայ տառեր (liquidae)

1. Կը գտնենք իրարու հետ փոխանակուած կառակեղ = γαλεάγρα, տառաղն = τάλαρος.

2. իրարու հետ համաձայնած՝ ալաբողն = ἀνάβολον. աքալար եւ աքարար = ἄχαρι, տարաձայնած՝ մանգղիոն = μάγγανον, կղմինդր = κεραμὶς.

Գ. Կրկնաբաղաձայններ

1. Սովորաբար բաղաձայնին մէկը դուրս կը ձգուի՝ դիկտատոր = δικτάτωρ, Թեղեայ = πτελέα, զոմ = ζεῦγμα (որուն մէջ սակայն կարելի է որ γ տառն արդէն աշխարհաբար յունարէնի մէջ անհետ եղած ըլլայ.) լապտէր = λαμπτὴρ, խափակ = χαμφάκης, Ողիմպ = Ὀλύμπιος (Մ. Խոր.) նաշիկ = ναστίσχος, մատուռն = μαρτύριον (որուն վրայ ազդած է նաեւ տարաձայնման միտումը), պերիզոտ = περίζωστρον, սաղմոս = ψαλμὸς, սատեր = στατὴρ, փիւրիտ = σφυρὶς, մանրագոր = μανδραγόρας, կիւփոս = σχῦφος, հմմտ. նաեւ ընիկ կեսուր բառն = սկեսուր:

Դ. Մակաբոյծ տառեր (Parasitische Laute)

Կը գտնենք յառաջ եկած՝ 1. բեմբ = βῆμα. 2. ն կամ մ՝ համր տառի մ'առջեւ, երբ նայ տառ մ'ալ կայ հետը՝ կղմինդր = χεραμὶς, սեմինդր = σεμίδαλις, լամբիւրինթ = λαβύρινθος, բայց նաեւ կինդար = χίδαρις. 3. գրամմատիկոս = γραμματι-, χὸς, մարկել = μαχέλλα, 4. հ՝ հեթանոս = ἔθνος հալուէ = ἀλόη.

Ե. Վանկի մը դուրս իյնալը՝

Կը ցուցընէ ստողոգիկան = στιχολογικὸς.






ՅԱՒԵԼՈՒԱԾ

---

# ՀԱՅԿԱԿԱՆ ՅԱՏՈՒԿ ԱՆՈՒՆՔ

ԳՐԵՑ

Հ. ՀԻՒԲՇՄԱՆ



# Ա Զ Դ

Այս վերնագրին ներքեւ հրատարակած է ծանօթ
ագէտն Հիւպշման համառօտ բայց հետաքրքրական
ւմնասիրութիւն մը Հայոց յատուկ անուանց վրայ
Hübschmann, Die altarmenischen Personen-
en), որ բնագրին մէջ ութ մեծ էջ կը գրաւէ: Այս
ութեանս մէջ առնուած չեն բազմաթիւ արշակունեան
ւանք, որոնց վրայ անշուշտ այլուր պիտի խօսի
ագէտը, երբ հայերէնի մէջ մնացած պարսկերէն բա-
ուն վրայ գրած ընդարձակ երկասիրութիւնը լոյս
նէ: Յաջորդովս կը ծանօթացընենք մեր ընթեր-
ւաց հայ անուանց այս ուսումնասիրութիւնն՝ ամբող-
ին: Դուրս մնացած են աստ անդ այնպիսի մասեր,
եւրոպական ընթերցողաց համար են, օրինակի հա-
ր՝ գերման. թարգմանութիւնք հայ անուանց եւն:

Հ. Յ. Տ.

## ՀԱՅԿԱԿԱՆ ՑԱՏՈՒԿ ԱՆՈՒԱՆՔ

Յաջորդովս հետազօտել կ'ուզենք թէ անուանադրութեան հնդեւրոպական այն կերպն, որ պարզած է Ֆիք (Fick) յունական յատուկ անուանց վրայ գրած իւր երկասիրութեան մէջ (Կէօթինկէն, 1874), հայերէնին մէջն ալ՝ ըլլայ նաեւ դոյզն նշմարանօք միայն՝ մնացա՞ծ է թէ ոչ։

Հայերէնին մէջ անուանց հետազօտութեան շատ աւելի մեծ դժուարութիւններ ընդդէմ կ'ելլեն քան լեզուական ուրիշ ասպարիզաց մէջ՝ հայ անուանց ատաղձին ինքնուրունութեան պատճառաւ։ Հայ պատմագիրք անուանց շատ մեծ քանակութիւն մ'աւանդած են, ինչպէս անոնց գրոց կից ցուցակներէն կրնայ տեսնուիլ. — այսպէս միայն Մովսէս Խորենացւոյ (հարազատ եւ անհարազատ) գործոց անուանց ցուցակը հազարէն աւելի անուն կը պարունակէ։ Սակայն երբ ի մերձուստ դիտենք՝ այս առերեւոյթ հարստութիւնը շատ զգալապէս կը նուազի։ Վասն զի նախ հայ պատմագիրք մասամբ միեւնոյն անուանքն կը կրկնեն՝ նիւթոյն նոյնութեան եւ յետնագոյն մատենագրին նախընթացէն կախում ունենալուն պատճառաւ. երկրորդ աւանդեալ անուանք չեն պարզապէս յատուկ անուանք մարդոց, այլ նաեւ աշխարհագրականք, եւ առաջինք՝ չեն միայն Հայոց անուանք, այլ նաեւ Պարսից,

Յունաց, Ասորւոց, Վրաց, Աղուանից, եւ ա
Եթէ վերջինքս՝ ինչպէս նաեւ աշխարհագր
անուանք մէկդի առնունք, որոնք հոս չեն
նուիր ի նկատ, կը մնայ հին հայ անուանց
քանակութիւն մը, որոնք սակայն չեն կ
ամբողջովին մեր այս հետազօտութեան
ըլլալ: Վասն զի մեծաւ մասամբ բնիկ հայ
նուանք չեն ասոնք, այլ փոխառեալ յօր
մունք: Ինչպէս որ Արշակունեաց եւ Ս
նեանց ժամանակ բազմաթիւ պարսկերէն
քրիստոնէութեան ժամանակ յունական եւ
սորական բառեր մտած են հայերէնին մէջ,
պէս ալ այն միջոցին շատ մ'օտար անո
եկած են ի Հայս եւ տարածուած հոն՝ հին
հայերէն անունները վտարելով: Ընդհանրա
պարսկերէն (մեծաւ մասամբ՝ արշակունի) ան
ներ կը կրէին ազնուականք. եկեղեցականք՝
Գրոց, յունական եւ ասորի անուններ, մին
ժողովուրդը պահեց թերեւս երկար ժամ
իւր բնիկ հին անունները, բայց ասոնք դժբ
տաբար ցանցառ կը յիշուին. վասն զի ռա
պատմագրաց քով աննշանակ էր եւ իւր ան
դժուարաւ կրնար յիշատակութեան ար
համարուիլ[2]:

---

1 Եկեղեցականաց մէջ կային բաց ատի ծննդ
Յոյներ եւ Ասորիներ, ինչպէս՝ քորեպիսկոպոսն Դ
"ազգաւ ասորի„ եւ իւր աշակերտը Եպիփան՝ «էր սա ա
յոյն» եւ Շաղիտայ՝ «ազգաւ ասորի.» (Բուզանդ, տպ.
նետ. 1832, էջ 36, 42, 218.) Փաւստոս եւ Արտաւազ
«ազգաւ հոռոմ.» (Բուզ. 265:)

2 Այսպէս կը յիշուի Եղիշէի քով (տպ. Վենետ.
էջ 125) «այր մի Խուժիկ անուն (էջ 140, 141 «Խու
կ'անուանուի), զոր նաեւ Փարպեցի (266—313) կը

Եթէ արդ մէկդի թողունք այս պարսկերէն եւ քրիստոնէական անուանքն՝ ցորչափ որ իբրեւ այնպիսի կրնանք զատոնք ճանչնալ, կը մնայ անուանց մնացորդ մ'որ ըստ իս երկուքի կը բաժնուի. անոնց՝ որոնց ստուգաբանութիւնն մթին է ինծի համար, եւ այնպիսեաց՝ որոնք առաւել կամ նուազ ապահովութեամբ կը մեկնուին հայերէնով: Առաջինները չեմ կրնար գործածել հետազօտութեանս համար, թէեւ հայաձեւ ըլլան (— իրենց ձայնական կազմութիւնը յատուկ հայերէն կերպարանք մ'ունենայ —) կամ ոչ: Այս կարգէն են հետեւեալ անունները:[1]

Անդովկ Սիւնի (Բուզ. 28). Աշոտ բագրատունի[2] (Սեբէոս, տպ. Պետրբ. 1879, էջ 56.) Առանձար Ամատունի (Ղազ. Փարպեցի, տպ. Վենետ. 1875, էջ 201, 256.) Առաւան տէր Վանանդայ (Փարպ. 126.) Ատոմ իշխան Գողթան (Բուզ. 29.) Ատոտ Գնունի (Բուզ. 233.)

---

Ըստ Փարպեցւոյ (էջ 283) վաճառական մըն էր, "որ էր ազգաւ Խուժիկ" այսինքն Շօշաստանցի մը: Ուստի ոչ թէ իւր անուանակոչութեամբն, այլ իւր ծննդեան համար "Խուժիկ" կը կոչուէր, այսինքն Շօշացի: Խուժիկ — նոր-պարսկ. xûšī, ուստի պահլաւ. xûžīk, հին պարսկ. (h)uvžiya, ածանցեալ-իկ մասնկամբ xužէն — հին պարսկ. (h)uvža.

1 Ասոնց մէջ կրնան ուստի գտնուիլ ինծի անծանօթ պարթեւ եւ ասորի անուններ, ինչպէս բոլորովին օտարոտի, հիւսիսային գաւառներէ առնուած անուանք: Եթէ տեղեաց անուններէն չափենք, խիտ հայ ազգաբնակութիւն կար միայն ի Բարձր Հայս, Այրարատ, Տուրուբերան եւ Վասպուրական: Ծոփաց եւ Աղձնեաց մէջ անշուշտ աւելի բազմաթիւ էին Արամեացիք եւ Քուրդք՝ ինչպէս նաեւ ի Մոկք եւ ի Կորճայք, միւս (հիւսիսային եւ հիւսիս-արեւելեան) նահանգաց մէջ Կովկասեան ցեղեր:

2 Այն անուանք՝ որ -ունի, -եան, -ուեան, -ացի կ'աւարտին, կը ցուցընեն հայ ազնուական տոհմերն եւ յոգնակիի մէջ՝ նաեւ անոնց բնիկ երկիրը:

Ատոմ Գնունի (փարպ. 126.) Արտէն եպիսկոպոս Բասենոյ, (Բուզ. 265.) Բաբգոյ՝ հայր Պապայ Արտակունւոյ (փարպ. 394.) Բակուր Սիւնի (փարպ. 255.) բդեաշխ Աղձնեաց. (Բուզ. 21.) Գարջոյլ Մաղխազեան (փարպ. 371. Բուզ. 104.) Գնէլ եղբօրորդի Արշակայ արքային Հայոց. (Բուզ. 90.) Գինդ եպիսկոպոս Դերջանայ. (կորիւն, տպ. վենետ. 1833, էջ 17.) = Գինդ (Մ. Խոր. տպ. վենետ. 1865, էջ 258) Գինդ իշխան Հաշտենից գաւառին ի կամինական տոհմէն (Բուզ. 29.) Գորան իշխան Ձորոյ (Բուզ. 29.) Դաղ Առաւեղեան (Եղիշէ, 150, որուն տեղ Դատ կ'ըսէ փարպեցի՝ էջ 256.) Զորաւաղ եպիսկոպոս վանանդայ (Բուզ. 270.) Զուիթ երէց Արտաշատու (Բուզ. 172—5, իսկ Մ. Խոր. 223 ունի Զուիթայ՝ հրէական ցեղէ.) Խոսրով ի գաւառէն Արշամունեաց (փարպ. 454, 455. հմմտ. Եղիշէ՝ 77, կորիւն՝ 20.) Խադ եպիսկոպոս ի գաւառէն Կարնոյ (Բուզ. 105. Մ. Խոր. 206. սեռ. Խադդայ՝ էջ 213.) Խորիշահ Մամիկոնեան՝ դուստր Մարզպանի, քոյր Արսլանբէկի եւ Գրիգորի (Կիրակոս Գանձակեցի, տպ. վենետ. 1865, էջ 211, վարդան, տպ. վենետ. 1862, էջ 140. պարսկերէ՞ն է՝ "Արեգակն թագաւորի„ նշանակութեամբ.) Կենան Ամատունի (Մ. Խոր. 233.) Կոտիտ տէր Ամատունեաց (Սեբ. 48, 56.) Մաշտոց ի գեղջէն Հացեկաց* Տարօնոյ (կորիւն, 6. փարպ. 33 = Մեսրոպ, Մեսրովբ առ Մ. Խորենացւոյ.) Մուշ Դիմաքսեան (Եղիշէ՝ 58, փարպ. 190.) Մուշէ (ասորերէ՞ն) եպիսկո-

պոս Արծրունեաց (Փարպ. 124.) Մուշեղ Մամիկոնեան (Բուզ. եւն.) Ցաշկուր Արծրունի (Փարպ. 495.) Պաճոյճ ի Մարդպետական գնդէն (Փարպ. 495.) Սմբատ բագրատունի (Մ. Խոր. 225. Սեբ. 53.) Սաղամութ տէր Անձտայ ի Ծոփս (Բուզ. 160.) Սարոն Գաբեղեան (Փարպ. 408.) Սուրմակ[1] եպիսկոպոս Բզնունեաց (Եղիշէ, 22.) Վաղինակ Սիւնի (Բուզ. 21, 250. Եղիշէ, 106.) Վաչէ Մամիկոնեան (Բուզ. 9, 16, 238. Արծրունի՝ անդ, 47. Համմտ. Վաչէ եւ Վաչագան Թագաւորք Աղուանից առ Մ. Կաղանկատուացւոյ, տպ. Փարիզ 1860, Ա, 129.) Վաչակ աշակերտ Գնդայ (Բուզ. 272.) Վարազ Գնթունի (Փարպ. 381.) Վարջ[2] կամսարական (Եղիշէ, 150) = Վարջայ (Փարպ. 256.) Վորոդ[3] իշխան Վանանդայ (Բուզ. 29.) Վրէն (սեռ. Վրոնայ) Նախ՝ Մաղխազեան (Փարպ. 126.) եւ երկրորդ՝ որդի Ասորւոյ մը (Փարպ. 354—356.) Տիրիթ եղբօրորդի Արշակայ արքային Հայոց (Բուզ. 90, 104.) Տիրոց Բագրատունի (Եղիշէ, 71. Փարպ. 195.) Տաճատ եպիսկոպոս Տայոց (Եղիշէ, 22, Փարպ. 125. Արծրունի՝ Եղիշէ, 150, Փարպ. 256. Գնթունի՝ Եղիշէ, 77. Փարպ. 213՝ Գընդունի. Ռշտունի՝ Բուզ. 47.) Փապակ Պալունի (Փարպ. 393.) Փապակ Առաւեղեան (Եղիշէ 150) = Փապակ (Փարպ. 256.) Փաքաւ (Փարպ. 222.) Փապագ[4] (Փարպ. 126, 211.) Փառան-

---

[1] Արդեօք = պարսկ. surma (շուփայ, աղպար։)
[2] Արդեօք Հայ վարջ բառին հետ կապ ունի՞։
[3] Պարթեւերէն Οὐορώδης։
[4] Տարբեր՝ է պահլաւերէն Pâpak, որ հայերէնի մէջ

Կը տեսնենք ր եւ ղ տառերէն յառաջ՝ նախ իբր ե, այսպէս՝ գառագեղ = γαλεάγρα, եկեղեցի = ἐκκλησία, տապեղ = τάβλα. — իբր ա՝ Հեթանոս = ἔθνος. — իբր ո (°.)՝ ստոման = στάμνος. — Ազգակից ձայներու հետ համաձայնելով՝ ստորոփինի = στρόβιλος, կարակն = καρκίνος.

## Դ. Համաձայնութիւն (assimilation).

Երկու կամ շատ՝ իրարու յաջորդող վանկերու ձայնաւորներն իրարու հետ նոյնացընելը շատ յաճախ կը գտնենք, որ նաեւ բնիկ բառերու մէջ յաճախադէպ է. այսպէս՝ լական = λεκάνη. լինգիւրոն = λιγγούριον. մեղեդի = μελῳδία. մեսեդի = μεσῳδία. մեքենայ եւ մեքանայ = μηχανή. մոմոս = μῖμος. ուղոգոմեան = εὐλογημένη. պոդոգրոս = ποδαγρός. սենգելոս = σύγκελλος. ստրոբողոս = στρόβιλος. փիլիսոփայ = φιλόσοφος. Յունարէնի մէջ ալ տեսնուած նման երեւոյթներուն վրայ տես Joh. Schmidt, KZ, XXXII, 321 ff.

## Ե. Կորուստ ձայնաւորաց

1. Ըստ ծանօթ ձայնական օրինաց ւ եւ a անշեշտ վանկերու մէջ դուրս կ'իյնան, այսպէս՝ նտրոն = νίτρον. պնակ = πίναξ. սնդոն = σινδών. տրմես trimessis. մղոն μίλιον. լաբիւրինթ λαβύρινθος. սկտեղ σκουτέλα. սրինգ σύριγξ. սփրիդ σφυρίς. զմռնիտես σμυρνίτης.

2. Յանուցիր կը տեսնենք նաեւ ε եւ o ձայնաւորներն ղ տառին առջեւն կորուսած՝ դլփին δελφίς, պտղի πτελέα, պտղոմեոս πτολομαῖος, կղմինտր κεραμίς.

3. Շեշտեալ վանկէն ետքը e եւ o ձայնաւորք դուրս ինկած են ս տառէն յառաջ՝ կոմս comes, ստամոքս στόμαχος.

4. Բառասկզբան ձայնաւորի կորուստ կը ցուցընեն՝ ռեմոն ἀρραβών, կոն = εἰκών, կոնոմոս =

*οἰκόνομος*, պեփոտոմ = *ἱππόδρομος*, սկեպտոր = exceptor, ղաբողն = *ἀνάβολον*, ղոգոմենան = *εὐλογημένη*.

*Դ. Տառափոխութիւն (metathesis)*

Ձայնաւորի փոխանակութիւն կը տեսնենք հետեւեալ բառերուն մէջ՝ ստամոքս = *στόμαχος*, եւ թերեւս ստոման = *στάμνος*. իսկ բիւրեղ = *βήρυλλος* բառին մէջ առ երեւոյթ միայն այնպէս է

*Բ. ԲԱՂԱՁԱՅՆՔ:*

*Ա. Համր տառեր (mutae)*

*ա) Թաւք*

1. Թաւերու տեղափոխութիւն կը ցուցնէ ակաթէս = *ἀχάτης*.

2. *φ* տառն բ եղած կը գտնենք՝ դաբնի = *δάφνη*, դելբին = *δελφὶς* (երկուքն ալ նոյն մը քով. Հմմտ. դաբր եւ դափր, բայց նաեւ յաբեթ = *Ιαφὲθ* առ Մ. Խոր., ուր թերեւս յերեւան կու գայ վանկասկզբան եւ վանկավերջի թաւ ըլլալուն դէմ եղած ծանօթ հակամիտութիւնը). անգամ մը վ եղած կը գտնենք՝ վաղար = *φάλαρα*.

3. *χ* կը տեսնենք շ եղած՝ արշիմանդրիտ = *ἀρχιμανδρίτης*, շլոռոս = *χλωρὸς*, մոլոշ = *μολόχη*. բառավերջին՝ գ եղած կը տեսնենք՝ պատրիարգ = *πατριάρχης* (Հմմտ. ղազ եւ ղաք) եւ մ տառէն յառաջ՝ դրագմ = *δραχμὴ*.

4. *ϑ* եղած է՝ դ՝ բադրոն = *βάθρον*, ընդհակառակն՝ կանթեղ = *χανδήλα*.

*բ) Միջակ տառեր (mediae)*

1. *δ* եղած է ր՝ լամբար = *λαμπαδ-*, Հմմտ. Hübschmann, ZDMG, XXXVI, 133.

2. *β* եղած է մ՝ առեմոն = *ἀῤῥαβὼν*.

*Բ. Նայ տառեր (liquidae)*

1. Կը գտնենք իրարու հետ փոխանակուած գառաագեղ = *γαλεάγρα*, տառաղն = *τάλαρος*.

2. Իրարու հետ համաձայնած՝ աղաբողոն = ἀνάβολον. ակալար եւ ակարար = ἄχαρι, տարաձայնած՝ մանգղեոն = μάγγανον, կղմինտր = κεραμὶς.

### Գ. Կրկնաբաղաձայններ

1. Սովորաբար բաղաձայններէն մէկը դուրս կը ձգուի՝ դիկտատոր = δικτάτωρ, Թեղեայ = πτελέα, զոմ = ζεῦγμα (որուն մէջ սակայն կարելի է որ γ տառն արդէն աշխարհաբար յունարէնի մէջ անհետ եղած ըլլայ.) լամպեր = λαμπτὴρ, կապոսկ = χαμψάκης, Ողիմպ = Ὀλύμπιος (Մ. Խոր.) նասիկ = ναστίσκος, մատուռն = μαρτύριον (որուն վրայ ազդած է նաեւ տարաձայնման միտումն), պերիզոտ = περίζωστρον, սաղմոս = ψαλμὸς, ստատեր = στατὴρ, սպիւրիդ = σφυρὶς, մանդրագոր = μανδραγόρας, սկիփոս = σκῦφος, հմմտ. նաեւ բնիկ կեսուր բառն = սկեսուր։

### Դ. Մակաբոյծ տառեր (Parasitische Laute)

Կը գտնենք յառաջ եկած՝ 1. բեմ = βῆμα. 2. ն կամ մ՝ համր տառի մ'առջեւ, երբ նոյն տառ մ'ալ կայ հետը՝ կղմինտր = κεραμὶς, սեմինդր = σεμίδαλις, լաբիւրինթ = λαβύρινθος, բայց նաեւ կինտար = κίδαρις. 3. գրամմատիկոս = γραμματι-, κὸς, մարկեղ = μακέλλα, 4. Հ՝ Հեթանոս = ἔθνος հալուէ = ἀλόη.

### Ե. Վանկի մը դուրս իյնալը՝

Կը ցուցընէ ստողոգիկան = στιχολογικὸς.



Գ.

ՅԱՒԵԼՈՒԱԾ

---

# ՀԱՅԿԱԿԱՆ ՅԱՏՈՒԿ ԱՆՈՒՆՔ

ԳՐԵՑ

Հ. ՀԻՒՊՇՄԱՆ



# ԱԶԴ

*Այս վերնագրին ներքեւ հրատարակած է ծանօթ հայագէտն Հիւպշման համառօտ բայց հետաքրքրական ուսումնասիրութիւն մը Հայոց յատուկ անուանց վրայ* (**H. Hübschmann, Die altarmenischen Personennamen**), *որ բնագրին մէջ ութ մեծ էջ կը գրաւէ: Այս քննութեանս մէջ առնուած չեն բազմաթիւ արշակունեան անուանք, որոնց վրայ անշուշտ այլուր պիտի խօսի հայագէտը, երբ հայերէնի մէջ մնացած պարսկերէն բառերուն վրայ գրած ընդարձակ երկասիրութիւնը լոյս տեսնէ: Յաջորդովս կը ծանօթացընենք մեր ընթերցողաց հայ անուանց այս ուսումնասիրութիւնն՝ ամբողջովին: Դուրս մնացած են աստ անդ այնպիսի մասեր, որ եւրոպական ընթերցողաց համար են, օրինակի համար՝ գերման. թարգմանութիւնք հայ անուանց եւն:*

Հ. Յ. Տ.

# ՀԱՅԿԱԿԱՆ ՅԱՏՈՒԿ ԱՆՈՒԱՆՔ

Յաջորդիւ հետազօտել կ'ուզենք թէ անուանադրութեան հնդեւրոպական այն կերպն, զոր պարզած է Ֆիք (Fick) յունական յատուկ անուանց վրայ գրած իւր երկասիրութեան մէջ (Գէօթինկէն, 1874), հայերէնին մէջն ալ՝ ըլլա՛յ նաեւ գոյզն նշմարանօք միայն՝ մնացա՞ծ է թէ ոչ։

Հայերէնին մէջ անուանց հետազօտութեան շատ աւելի մեծ դժուարութիւններ ընդդէմ կ'ելլեն քան լեզուական ուրիշ ասպարիզաց մէջ՝ հայ անուանց ատաղձին ինքնուրունութեան պատճառաւ։ Հայ պատմագիրք անուանց շատ մեծ քանակութիւն մ'աւանդած են, ինչպէս անոնց գրոց կից ցուցակներէն կրնայ տեսնուիլ. — այսպէս միայն Մովսէսի Խորենացւոյ (հարազատ եւ անհարազատ) գործոց անուանց ցուցակը հազարէն աւելի անուն կը պարունակէ։ Սակայն երբ ի մերձուստ դիտենք՝ այս առերեւոյթ հարստութիւնը շատ զգալապէս կը նուազի։ Վասն զի նախ հայ պատմագիրք մասամբ միեւնոյն անուանքն կը կրկնեն՝ նիւթոյն նոյնութեան եւ յետնագոյն մատենագրին նախընթացէն կախում ունենալուն պատճառաւ. երկրորդ աւանդեալ անուանք չեն պարզապէս յատուկ անուանք մարդոց, այլ նաեւ աշխարհագրականք, եւ առաջինք՝ չեն միայն Հայոց անուանք, այլ նաեւ Պարսից,

Յունաց, Ասորւոց, Վրաց, Աղուանից, եւ այլոց՝ Եթէ վերջինքս՝ ինչպէս նաեւ աշխարհագրական անուանք մեկդի առնունք, որոնք հոս չեն առնուիր ի նկատ, կը մնայ հին հայ անուանց փոքր քանակութիւն մը, որոնք սակայն չեն կրնար ամբողջովին մեր այս հետազօտութեան հիմն ըլլալ: Վասն զի մեծաւ մասամբ բնիկ հայ անուանք չեն ասոնք, այլ փոխառեալ յորջորջմունք: Ինչպէս որ Արշակունեաց եւ Սասանեանց ժամանակ բազմաթիւ պարսկերէն, եւ քրիստոնէութեան ժամանակ յունական եւ ասորական բառեր մտած են հայերէնին մէջ, այսպէս ալ այն միջոցին շատ մ'օտար անուանք եկած են ի Հայս եւ տարածուած հոն՝ հին բնիկ հայերէն անունները վտարելով: Ընդհանրապէս պարսկերէն (մեծաւ մասամբ՝ արշակունի) անուններ կը կրէին ազնուականք. եկեղեցականք՝[1] Ս. Գրոց, յունական եւ ասորի անուններ, մինչդեռ ժողովուրդը պահեց թերեւս երկար ժամանակ իւր բնիկ հին անունները, բայց ասոնք դժբախտաբար ցանցառ կը յիշուին. վասն զի ռամիկը պատմագրաց քով աննշանակ էր եւ իւր անունը դժուարաւ կրնար յիշատակութեան արժանի համարուիլ[2]:

---

1 Եկեղեցականաց մէջ կային բաց աստի ծննդեամբ Յոյներ եւ Ասորիներ, ինչպէս՝ քորեպիսկոպոսն Դանիէլ՝ "ազգաւ ասորի„ եւ իւր աշակերտը Եպիփան՝ «էր սա ազգաւ յոյն„ եւ Շաղիտայ՝ «ազգաւ ասորի.„ (Բուզանդ, տպ. Վենետ. 1832, էջ 36, 42, 218.) Փաւստոս եւ Արտոստոմ էին «ազգաւ հոռոմ.„ (Բուզ. 265:)

2 Այսպէս կը յիշուի Եղիշէի քով (տպ. Վենետ. 1859, էջ 125) «այր մի Խուժիկ անուն (էջ 140, 141 «Խուժիկն„ կ'անուանուի), զոր նաեւ Փարպեցի (266—313) կը յիշէ:

Եթէ արդ մէկդի թողունք այս պարսկերէն եւ քրիստոնէական անուանքն՝ ցորչափ որ իբրեւ այնպիսի կրնանք զատոնք ճանչնալ, կը մնայ անուանց մնացորդ մ'որ ըստ իս երկուքի կը բաժնուի. անոնց՝ որոնց ստուգաբանութիւնն մթին է ինծի համար, եւ այնպիսեաց՝ որոնք աւել կամ նուազ ապահովութեամբ կը մեկնուին հայերէնով: Առաջինները չեմ կրնար գործածել հետազօտութեանս համար, թէեւ հայաձեւ ըլլան (— իրենց ձայնական կազմութիւնը յատուկ հայերէն կերպարանք մ'ունենայ —) կամ ոչ: Այս կարգէն են հետեւեալ անունները:[1]

Անդովկ Սիւնի (Բուզ. 28). Աշոտ բագրատունի[2] (Սեբէոս, տպ. Պետրբ. 1879, էջ 56.) Առանջոր Ամատունի (Ղազ. փարպեցի, տպ. վենետ. 1875, էջ 201, 256.) Արտան տէր վանանդայ (փարպ. 126.) Ատոմ իշխան Գողթան (Բուզ. 29.) Ատոմ Գնունի (Բուզ. 233.)

---

Ըստ Փարպեցւոյ (էջ 283) վաճառական մըն էր, որ էր ազգաւ խուժիկ, այսինքն Շօշաստանցի մը: Ուստի ոչ թէ իւր անուանակոչութեամբն, այլ իւր ծննդեան համար "խուժիկ,, կը կոչուէր, այսինքն Շօշացի: Խուժիկ — նոր-պարսկ. xûzī, ուստի պահլաւ. xûzīk, հին պարսկ. (h)uvžiya, ածանցեալ-իկ մասնկամբ xužէն — հին պարսկ. (h)uvža.

[1] Ասոնց մէջ կրնան ուստի գտնուիլ ինծի անծանօթ պարսիկ եւ ասորի անուններ, ինչպէս բոլորովին օտարոտի, հիւսիսային գաւառներէ առնուած անուանք: Եթէ տեղեաց անուններէն չափենք, խիտ հայ ազգաբնակութիւն կար միայն ի Բարձր Հայս, Այրարատ, Տուրուբերան եւ Վասպուրական: Ծոփաց եւ Աղձնեաց մէջ անշուշտ աւելի բազմաթիւ էին Արամէացիք եւ Քուրդք՝ ինչպէս նաեւ ի Մոկք եւ ի Կորճայք, միւս (հիւսիսային եւ հիւսիս-արեւելեան) նահանգաց մէջ Կովկասեան ցեղեր:

[2] Այն անուանք, որ -ունի, -եան, -ական, -ացի կ'աւարտին, կը ցուցընեն հայ ազնուական տոհմերն եւ յոգնակիի մէջ՝ նաեւ անոնց բնիկ երկիրը:

Ատոմ Գնունի (Փարպ. 126.) Արտէն եպիսկոպոս Բասենոյ, (Բուզ. 265.) Բաբոյ՝ հայր Պապայ Արտակունեաց (Փարպ. 394.) Բակուր Սիւնի (Փարպ. 255.) բդեաշխ Աղձնեաց. (Բուզ. 21.) Գարջոյլ Մաղխազեան (Փարպ. 371. Բուզ. 104.) Գնէլ եղբօրորդի Արշակայ արքային Հայոց. (Բուզ. 90.) Գինդ եպիսկոպոս Դերջանայ. (Կորիւն, տպ. Վենետ. 1833, էջ 17.) = Գնիթ (Մ. Խոր. տպ. Վենետ. 1865, էջ 258) Գնիթ իշխան Հաշտենից գաւառին ի կամինական տոհմէն (Բուզ. 29.) Գորոն իշխան Ձորոյ (Բուզ. 29.) Դատ Առաւեղեան (Եղիշէ, 150, որուն տեղ Դատ կ'ըսէ Փարպեցի՝ էջ 256.) Զորթուատ եպիսկոպոս Վանանդայ (Բուզ. 270.) Զուիթ երէց Արտաշատու (Բուզ. 172—5, իսկ Մ. Խոր. 223 ունի Զուիթայ՝ հրէական ցեղէ.) Խուրս ի գաւառէն Արշամունեաց (Փարպ. 454, 455. հմմտ. Եղիշէ՝ 77, Կորիւն՝ 20.) Խադ եպիսկոպոս ի գաւառէն Կարնոյ (Բուզ. 105. Մ. Խոր. 206. սեռ. Խադդայ՝ էջ 213.) Խորիշահ Մամիկոնեան՝ դուստր Մարզպանի, քոյր Արսլանբէկի եւ Գրիգորի (Կիրակոս Գանձակեցի, տպ. Վենետ. 1865, էջ 211, Վարդան, տպ. Վենետ. 1862, էջ 140. պարսկերէ՞ն է՝ "Արեգակն թագաւորի" նշանակութեամբ.) Կենան Ամատունի (Մ. Խոր. 233.) Կոտիտ տէր Ամատունեաց (Սեբ. 48, 56.) Մաշթոց ի գեղջէն Հացեկաց* Տարօնոյ (Կորիւն, 6. Փարպ. 33 = Մեսրոպ, Մեսրովբ առ Մ. Խորենացւոյ.) Մուշ Դիմաքսեան (Եղիշէ 58, Փարպ. 190.) Մուշէ (ասորերէ՞ն) եպիսկո-

պոս Արծրունեաց (Փարպ. 124.) Մուշեղ Մամիկոնեան (Բուզ. եւն.) Յաշխուր Արծրունի (Փարպ. 495.) Պաճոյ ի Մարդպետական գնդէն (Փարպ. 495.) Սմբատ բագրատունի (Մ. Խոր. 225. Սեբ. 53.) Սողոմոն տէր Անձայ ի Տոփս (Բուզ. 160.) Սափոն Գաբեղեան (Փարպ. 408.) Սուրմակ[1] եպիսկոպոս Բզնունեաց (Եղիշէ, 22.) Վաղինակ Սիւնի (Բուզ. 21, 250. Եղիշէ, 106.) Վաչէ Մամիկոնեան (Բուզ. 9, 16, 238. Արծրունի՝ անդ, 47. Հմմտ. Վաչէ եւ Վաչական Թագաւորք Աղուանից առ Մ. Կաղանկատուացւոյ, տպ. Փարիզ 1860, Ա, 129.) Վաչակ աշակերտ Գնդայ (Բուզ. 272.) Վարտոշ Գնթունի (Փարպ. 381.) Վարձ[2] կամսարական (Եղիշէ, 150) = Վարձայ (Փարպ. 256.) Վորոդ[3] իշխան Վանանդայ (Բուզ. 29.) Վրէն (սեռ. Վրենայ) Նախ՝ Մաղխազեան (Փարպ. 126.) եւ երկրորդ՝ որդի Ասորւոյ մը (Փարպ. 354—356.) Տիրիթ եղբօրորդի Արշակայ արքային Հայոց (Բուզ. 90, 104.) Տիրոց Բագրատունի (Եղիշէ, 71. Փարպ. 195.) Տաճատ եպիսկոպոս Տայոց (Եղիշէ, 22, Փարպ. 125. Արծրունի՝ Եղիշէ, 150, Փարպ. 256. Գնթունի՝ Եղիշէ, 77. Փարպ. 213՝ Գընդունի. Ռշտունի՝ Բուզ. 47.) Փապակ Պալունի (Փարպ. 393.) Փապակ Առաւեղեան (Եղիշէ 150) = Փապակ (Փարպ. 256.) Փափաք (Փարպ. 222.) Փապէկ[4] (Փարպ. 126, 211.) Փառան-

---

[1] Արդեօք = պարսկ. surma (չուփայ, աղպար։)

[2] Արդեօք Հայ վարձ բառին հետ կապ ունի՞։

[3] Պարթեւերէն Οὐορώδης ?

[4] Տարբեր՝ է պահլաւերէն Pâpak, որ Հայերէնի մէջ

Ջէմ[1] դուստր Սիւնոյն Անդովկայ, կին Գնէլայ, եւ ապա արքային Արշակայ (Բուզ. 116, 133.) Փէրոզ սեննեկապետ Տիրանայ արքային Հայոց՝ "ազգաւ սիւնի,, (Բուզ. 49.) Քաջաջ Մահառունի (Փարպ. 441.) սարկաւագ մը (Եղիշէ, 139. Փարպ. 222.) Քասու եպիսկոպոս Տուրուբերանի (Եղիշէ, 22. Փարպ. 125.) Քոնր Առաւեննեան (Փարպ. 467 :)[2]

Այս ամէն անուանքը մէկդի հանելէն ետքն, ինչպէս նաեւ քանի մ'ուրիշներ ալ, որ անապահով կամ ստեղծեալ[3] են, կը մնան յաջորդ բնիկ հայ անուանքս։

Այծեամ. անուն կամ մականուն կնոջ մը Սամուէլի Անեցւոյ քով (յամի 1126). Հմմտ. Չամչեան, Գ, 45. Brosset, Collection II. 461. Հայերենէն՝ այծեամ է վարի այծ։[4]

Այրուկ. Սլկունի մը (Եղիշէ, 77.) Հայերէն՝ այրուկ է՝ Թզուկ, ածացեալ այր բառէ եւ -ուկ մասնկէ։[5]

---

միայն պատուոյ կրնան հնչուիլ. հմմտ. յաճախ յիշուածն պատ։

1 Պարսկերէն farr-anjâm. (Nöldeke.)

2 Այս ի մէջ բերուած անուանց կազմութեան համար յիշուի որ ոմանք -ակ կը վերջաւորին (որ յաճախ կը գործածուի պահլաւերէնի եւ հայերէնի մէջ), եւ այլք -էն կամ -ոյ։

3 Այսպիսի են Մ. Խորենացւոյ քով նախնագոյն ժամանակի քանի մը հայ անուանք։

4 Հմմտ. Այծեմնիկ անունը (Բուզ. 77) = Գործք Առաք. Թ, 36. Տաբիթա (Ταβιθά) "որ թարգմանեալ կոչի Այծեմնիկ,, (Δορκάς·) այծեամն եւ ալ մաննիկ։

5 Ի հարկէ ուշ ժամանակաւ միայն կը տեսնուի -ուկ մասնկան փոքրկացընելու նշանակութիւն առած ըլլալը. հին ժամանակներն այս նշանակութիւնը չունի այլուր. հմմտ. գեղջուկ, գիւղ՝ գեղջ բառէն։

Առիւծ. Հայ իշխան մը Թլկուրանի (Հայկական Միջագետքի.) Զամչ. գ. 55 (յամի 1136:)

Առնակ. Ամատունի մը (Եղիշէ, 150. Փարպ. 256, 340. Հմմտ. Մ. Խոր. 43.) անշուշտ լուծելու ենք՝ առն-ակ, որ կազմուած ըլլայ առն-(սեռական՝ այր բառին) կամ առին-(ուղղական առն, յբ. Հյց. առինս առ Եզնկայ՝ 148, ուր յիշուած է եղջերուի եւ վարազի հետ, իբր "արու վայրի ոչխար„) եւ -ակ մասնկէ, որ բնիկ Հայ մասնիկ մըն է եւ կը կազմէ նախ՝ նուազականներ, եւ երկրորդ՝ ածական անուններ ուրիշ անուններէ (գոյականներէ):

Արձան. Արձրունի մը. (ի Ցուցք. Մատենագրութեանց կորեան, Մամբրէի եւ Դաւթի, Վենետ. 1833, էջ 99.) աշակերտ Մաշթոցի (Փարպ. 205. Մ. Խոր. 259.) քուրմ մը (Զենոբ, 25:) Հայերէն արձան կը նշանակէ՝ քար, ժայռ, սիւն, պատկեր (statue): — Տարակուսական է:

Արուսեակ. Բագրատունեանց տնէն, կին Սեւատայ, որ պարսկական ընտանիքէ մըն էր (Յովհ. կաթուղիկոս, տպ. Մոսկ. 1853, էջ 61.) Հայերէն արուսեակ է առաւօտեան աստղն, Լուսաբեր: — Հմմտ. Աստղիկ դիցուհին, զոր Ափրոդիտեայ համազօր կը դնէ Ագաթանգեղոս (տպ. Վենետ. 1862, էջ 607,) եւ ըստ Վարդանայ (էջ 9) դուստր էր Նոյի. կազմուած աստղ բառէն եւ -իկ նուազական[1] մասնկէն. (սեռ. -կան հնագոյն ժամանակները:)

---

1 Այս բնիկ Հայ մասնկան քով կայ նաեւ ածական

Արտոյտ. աշակերտ Գնդայ (Բուզ. 272.) հայերէն արտոյտ կամ արտէտ թռչունն է (գերմ. Lerche):

Գարեգին, (Եղիշէ, 12.) ի տանէն Սրուանձտեանց (Եղիշէ, 93. Փարպ. 213.) Ռշտունի մը (Բուզ. 17.) կազմուած հայերէն գարի բառէն եւ -ա-գին մասնկէն (հմմտ. ահ եւ ահագին), ուստի այնպէս՝ ինչպէս է գերմ. Gerstner անունը (՞)

Գէտ. վահեւունի մը (Եղիշէ 33, 71.) կաթուղիկոսն ի Տայոց գաւառէ Առահեզ գիւղէն (Փարպ. 333.) հայերէն գէտ է՝ գտնելը, հնարելը, եւ անկէ հանուած շահն: — Անհաւանական է:

Գոր եւ Գողան. երկու եղբարք՝ ընկերակիցք Բաբկենի Սիւնւոյ (Մ. Կաղանկ. Ա. 211.) պարսկերէն gôr է՝ վայրի էշ, եւ հայերէն՝ գողան է վայրի անասուն (:՞)

Գինդ. ի Տարօնոյ, աշակերտ Դանիէլի (Բուզ. 271.) հայերէն՝ գինդ (= բուն գինդ:)

Դուստր.[1] կին Վարդանայ (Կոր. 25.) հմմտ. Dughdâ մայր Զրադաշտի՝ Բունդեհեշի մէջ (West, Pahlavi Texts, I, 144.)

---

չինող-իկ (սեռ. -կի) մասնիկ մ'ալ, որ պահլաւերէնէ (îk) առնուած է:

1 Ազգականութեան բառեր (հայր, մայր, եղբայր եւն) պարսկերէնին մէջ ալ կը գործածուին իբրեւ մարդու անուն (տես Nöldeke, Pers. Stud. I, 27) եւ նաեւ սեմականաց մէջ (տես Nöldeke, WZKM, VI, 307 ff. ուր կը ցուցուի որ կան օրինակի համար այս նշանակութեամբ անուանք՝ Դատրիկ, Եղբայր, Քոյր, Հայր, Հօրեղբայր, Եղբայր հօր իւրոյ, Քոյր հօր իւրոյ եւն:)

Դուրբէն մամիկոնեան իշխանուհի, նու Մեծին Սահակայ, կին Ստրատելատին Վարդանայ. (Մ. Խոր. 270.) միեւնոյն անձն Ասողկայ քով (տպ. փարիզ 1859, էջ 78) կը կոչուի Դխուբէն եւ կ'ըսուի թոռն Ս. Սահակայ, հայերէն դուստր բառին տեղ պարսկերէն դուխտ բառը դնելով. դխուբէն = հայ՝ դուրբէն։

Եղջայր. եպիսկոպոս Անձեւացեաց (Եղիշէ, 22. փարպ. 125։)

Եղնիկ. եպիսկոպոս Բագրեւանդայ (Եղիշէ, 22. փարպ. 125.) Եղնիկ ի գեղջէն Կողբայ Այրարատ գաւառին (Կորիւն, 20, 21. Մ. Խոր. 258) = Եղնակ (Կորիւն 21 եւ 99 Ցուցբ. Դաւթի գրոց.) կազմուած եղն բառէն եւ նուազական -իկ եւ -ակ մասնկէն։

Երանեակ. դուստր Տիրան հնազոյն թագաւորի մը. դուստր Տրդատայ Բագրատունւոյ (միայն Մ. Խոր. 141 կը յիշէ) հայերէն Երանեակ է = Beata.

Ընձուղ. իշխան Ածկէոյ (Եղիշէ 71.) ընձուղ է փոքր արու հորթ։

Թաթ. կամսարական մը. (փարպ. 256,) որուն տեղ Եղիշէ (էջ 150) Թաթուլ կ'ըսէ. հմմտ. Թաթուլ Դիմաքսեան (Եղիշէ 77. փարպ. 185.) Թաթուլ Վանանդեցի (Եղիշէ 90. փարպ. 210.) Թաթիկ, եպիսկոպոս Բասենոյ. (Եղիշէ 22, 139. փարպ. 125.) հայերէն թաթ է ձեռաց ներքսակողմն, ոտքին ներքանը, եւ ընդհանրապէս՝ ոտք (անասնոց). Թաթուլ է թաթ անաս-

նոց. ուստի Ըաըէկ նուազական -էկ մասնկաւ կազ-մուած է Ըաըէն:

Թոռնէկ. (յիշուած է միայն սեռականը՝ Թոռնէկայ.) Բագրատունի մը (Թովմ. Արծրունի, տպ. Պետրբ. 1887, էջ 109.) հայր Աբ-դըլմսեհի (անդ, 309.) որդի Խեդենկայ, հայր Թադէոսի (անդ, 310—311.) որդի Թադէոսի, հայր Աբդըլմսեհի (անդ, 311.) հայերէն Թոռն բառէն եւ -էկ նուազականէն կազմուած:

Իշխանէկ. (Ստեփանոս Օրպէլեան, տպ. Փարիզ 1859, Բ, 61. Յովհ. Կթղ. 79) իբրեւ փաղաքշական մականուն Սիւնւոյն Վասակայ. Իշ-խան բառէն եւ -էկ մասնկէն կազմուած:

Խաչէան. Առաւեղեան մը (Սեբ. 108.) Խաչէկ, հայրն Ապլղարիպի, Վասպուրականի իշ-խաններէն (Վարդան 106.) կաթուղիկոս մը (Վարդան 90, 99.) հայերէն Խաչ բառէն ուստի հազիւ քրիստոնէութեան ժամանակէն է:

Խոճկորէկ, հրամանատար Ցռի քաղաքին, նախարար մ՚Աղուանից աշխարհէն (Մ. Կաղ. Ա, 148, 149.) կազմուած հայերէն խոճկոր (խոճ-կորակ), բառէն եւ -էկ մասնկէն:

Ծամակ. նահապետ Հաշտենից (միայն Վարք Ներս. 53.) հայերէն Ծամ (հիւսուած վարսից) բառէ՞ն: — Հմմտ. վարը՝ Գիսակ

Ծիծառնէկ. տարօնեցի մը (Յովհ. Կաթող. 54, 55.) կազմուած ծիծառն բառէն եւ -էկ մաս-նկէն. հմմտ. Ծիծառնակ:

Կորիւն. աշակերտ Մաշթոցի (Կոր. 21. Ղ. Փարպ. 35, 103՝ սեռ. Կորեան, եւ 205 գործի-

ական՝ կորեամբ, Մ. Խոր. 259.) հայերէն՝ կորիւն է անասնոյ ձագ (առիւծի եւն.) հմմտ. Բուզանդ (էջ 9) որդ կորիւն՝ տղու նկատմամբ։

Կորիճ. իշխան Գարդմանայ (Յովհ. կաթ. 71.) հայկական կը հնչէ[1]. կապ ունի՞ կորուրդ, կորեւ, կորիւն, կորեոց բառերուն հետ։ — Շատ անապահով է։

Հայր. Իշխան Մարդպետութեան Հայր անուամբ (Բուզ. 45.) ներքինի մը Հայր անուն (Բուզ. 46.) բուն անուն չէ, այլ յորջորջանք կամ լաւ եւս տիտղոս[2] արքայի ներքինապետին, ուստի = հայր (թէեւ այլազգ կը խոնարհի՝ սեռ. Հայրի, Բուզ. 115։)

Հրաչեայ. միայն առ. Մ. Խորենացւոյ (էջ 47) հնագոյն ժամանակներէ, ուստի նաեւ Յովհ. կաթ. եւ Վարդան, վերջնոյս քով (էջ 37) կը յիշուի համանուն մէկն ի սերնդոց Անակայ, թագաւոր յաշխարհին Գոթաց, որուն յաղթած ըլլայ Տրդատ Դիոկղետիանու իշխանութեան ժամանակ. կը նշանակէ՝ «կրակաչուի։»

---

1 Այս -իճ մասնիկը կը գտնուի դառնիճ, կաղիճ, հարփիճ, ոսփիճ բառերուն մէջ. (դառն, կաղ, հարփ, ոսփել բառերէն կազմուած։)

2 Հայր մարդպետ տիտղոս է շատ մը ներքինապետաց, ինչպէս կը տեսնուի Բուզ. 115 եւ 171 տեղերէն, եւ ինչպէս յէջն 113 կ'ըսուի՝ «Եւ էր մարդպետն Հայր այր չար եւ ժանտաբարոյիւք անօրէն եւ անիրաւ քան Հայր անուն մարդպետան։» Այսպէս յէջն 206 եւ յետոյ յէջս 217, 218, 233 ներքինին Դրաստամատ «Հայր Մարդպետ» կը կոչուի։ Եւ իւր նախորդին՝ Դղակ (Բուզ. 191) կամ Դղակ (էջ 203—205) անձին թէ նկատմամբ կ'ըսուի «Եւ փոխանակ նորա ի տեղի հայրութեան մարդպետութեան զԴղակ անուն դրաւ Պապ. եւ թէ «Գղակ մարդպետ, որ անուանեալ կոչէր ըստ գործոյն՝ հայր թագաւորին» (էջ 203) կամ «գործակալութիւն եւ մարդպետութիւն, որում հայրն կոչէին ներքինեացն» (էջ 206։)

Հաւուկ. ի Գուգարաց (Մ. Խոր. 265.) հայերէն հաւ (1. հաւ. 2. պապ.) բառէ եւ -ուկ մասնկէ:

Ձագիկ. իշխան Սիւնեաց (Օրբ. Ա, 252, 279 եւն. Բ, 15) հայերէն ձագ (թռչնոց) բառէ եւ -իկ մասնկէ:

Ձուիկ. (սեռ. Ձուիկայ) կին Հմայեկայ Մամիկոնենոյ (Փարպ. 335.) ձու (հաւկիթ) բառէ եւ -իկ մնկէ:

Մարախ. աշակերտ Գնդայ (Բուզ. 272.) մարախ պարսկերէնէ փոխառեալ բառ մըն է:

Մուշկ. Նահապետ Սահառունեաց (Բուզ. 104.) դժուարաւ կապ ունի հայերէն մուշկ (moschus) = պարսկ. mušk բառին հետ:

Մուրիկ. սարկաւագապետ մը (Բուզ. 118.) հայերէն մուրիկ (մուրացիկ) բառէն: (Վերջին ժամանակաց մէջ կը գտնենք Մուրիկ սխալմամբ գրուած փխ. Մաւրիկ = Mauricius, հմմտ. Թովմ. 85 Մուրիկ = Սեբ. 47 Մաւրիկ:)

Մրջիւնիկ. երէց մը, (Վարք Ներսէսի, տպ. Վենետ. 1853, Ժ դարէն, էջ 51) = Մրջիւնիկ ի գեղջէն Գոմկունք ի Տարօն. (Բուզ. 123, միեւնոյն անձը.) Մրջիւնիկ ի Քարատնիքէ (Ստեփ. Օրպ. Ա, 261.) հայերէն՝ մրջիւն (= մրջիւն) բառէ եւ -իկ մասնկէ:

Ցոլիկ. 1. որդի Վրթանիսի, թոռն Գրիգորի Լուսաւորչի (Բուզ. 10, սեռ. Ցոլկան՝ էջ 32.) 2 ի սերնդէն եպիսկոպոսին Աղբիանոսի Մանազկերտոյ (Բուզ. 226.) հայերէն ցոլ բառէն եւ -իկ մասնկէ:

Որդէ. ի տանէն Դիմաքսեանց (փարպ. 441։)

Չունակ (Չունակ.) կաթուղիկոս, յաջորդ Ներսէսի (Բուզ. 123. Վարք Ներս. 66. Վարդան 48.) Հայերէն չ- (= ոչ) եւ ունակ (= ունեցող) բառերէն, ուստի "աղքատ" իմաստով։ (°)

Պարգեւ. Արծրունի մը (Եղիշէ 150, փարպ. 256.) Ամատունի. (Բուզ. 72. Մ. Խոր. 242.) Գնունի (Վարք Ներս. 15.) Հայերէն՝ պարգեւ է "ընծայ։"

Սագ (եւ Սէգ.) իշխան Բարմի (Վարք Ներս, 25.°) Հայերէն՝ սէ՞գ բառն է։ — Շատ տարակուսական է։

Սեւուկ. իշխան Անձեւացեաց (փարպ. 388 389.) Նախահաւ Սեւորդեաց (Վարդան 81 Հմմտ. Brosset, Collection I, 232 ծն.) սեւուկ նուազական է սեւ բառին։

Տէրէկ. եպիսկոպոս Բասենու (Բուզ. 270, սեռ. Տէրկան,) Հայերէն տէր եւ -էկ մասնկէ կազմուած (°)։ (Նշանակութեան կողմանէ համեմատելու է սա անուանքս՝ Δόμνος, իգ. Δόμνα, Κύριος եւն։)

Տէրուկ. քահանայ մը, որդի Մովսիսկա ն Ջարիշատէ վանանդայ (Մ. Խոր. 266.) տէր եւ -ուկ բառերէ՞ կազմուած։

Տէրայր. ի Խորձենից, օգնականն Մաշթոցի (Կորիւն 14) կրնար Հայերէն տէր-այր բառն ըլլալ։

Այս վերջաւորող ուրիշ անուանք են՝ Ուռնայր, Թագաւոր Աղուանից (Բուզ. 193, ուստի անշուշտ չէ Հայերէն, թէեւ Հայերէնի

մէջ կրնար անունս ՈՒՐԱՆ ԱՅՐ նշանակել.) ՆՈՐԱՅՐ (Մ. Խոր. 43, ուստի Հայ նախաժամանակէն, որմէ առնուած է անշուշտ նորագոյն ժամանակիս ՆՈՐԱՅՐ անուան գործածութիւնը) կրնայ նշանակել՝ ՆՈՐ-ԱՅՐ = Neumann, Νέανδρος. ԶԱՐՄԱՅՐ (Մ. Խոր. 43, նմանապէս նախաժանակէն) կրնայ մեկնուիլ ԶԱՐՄ-ԱՅՐ։[1] — Ամէնն ալ անապահով։

Տիր- սկզբաւորութեամբ ուրիշ անունները մթին են. Տիրէն եւ Տիրոց վերը յիշեցինք. ՏԻՐԱՆԱՄ (սարկաւագն Ներսէսի, Բուզ. 91) կրնար պարսկերէնով մեկնուիլ՝ "ՏԻՐԷ ԱՆՈՒՆՆ ՈՒՆԵՑՈՂ"[2], բայց ան ատեն պէտք էինք ՏՐԱՆԱՄ (Հմմտ. ՏՐԴԱՏ) ձեւն սպասել։ Հայոց արքայի ՏԻՐԱՆ անունը (Բուզ. 11) անշուշտ՝ հայկական միւս արքայանուանց պէս՝ արշակունեան-պարսկական ծագում ունենալու է. չենք կրնար զայս Տիր անունէն յառաջ բերել, վասն զի այն ատեն ՏՐԱՆ հնչուելու էր։ Նորագոյն անուանքն որ Տիր-կը սկսին, քրիստոնէական ծագում ունին. այսպէս ՏԻՐԱՆՈՒՆ (ՏԷՐ-ԱՆՈՒՆ, որ ունի ԶԱՆՈՒՆ ՏԵԱՌՆ Յիսուսի Քրիստոսի.) ՏԻՐԱՏՈՒՐ (տուեալ ի Տեառնէ.) Հմմտ. ԽԱՉԱՏՈՒՐ, ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ։

Կը մնան տակաւին միայն երկրորդական անուանք, որ հնագոյն՝ մեծաւ մասամբ փոխա-

---

1 Առ այս՝ գիւղի անունս ԱՌԱՐԱՅՐ (Փարպ. 203), զոր չենք կրնար ԱՌԱՐ-ԱՅՐ վերլուծել. ԱՅՐ կը նշանակէ նաեւ «անձաւ»։

2 Տիր (Tîr) դից վրայ Հմմտ. Nöldeke, Pers. Stud. I, 33 ff.

ռեալ անուններէ կազմուած են հայկական -իկ[1] եւ -ուկ մասնիկներով։

1. -իկ մասնկամբ (Նուազական)՝

Խոսրովիկ. իշխան մը (Ստեփ. Օրպ. Բ, 79) պարսկ. Խոսրով անունէն։

Մոլոքիկ. Հայր Տիրուկի (Մ. Խոր. 266, սեռ. Մոլոքիկան.) Ս. Գրոց Մոլոք անունէն։

Շուշանիկ. իշխանուհի Աղուանից (Մ. Կաղ. Ա, 152) Ս. Գրոց Շուշան անունէն = Σουσάννα (Ղուկ. Ը, 3.) Ագաթ. 142. իշխանուհի մը (Ղեւոնդ Երէց, տպ. Փարիզ 1857, Ը դարէն, էջ 46, Ստեփ. Օրպ. Ա. 230, 235, 236, 281 եւն.) իշխանուհի Սիւնեաց, կին Աշոտայ։

Սմբատիկ. ասպետ մը (Սեբ. 66.) հայերէն Սմբատ անունէն։

Վահանիկ կամ Վահան,[2] կաթուղիկոս (Կիր. 49։)

Վարդիկ. իշխան Մոկաց, որ կը կոչուի Անիկ (Սեբ. 109.) առաջինը Վարդ անունէն, վերջինս Ան բառէն (ասաք՝ փոքր վարդ եւ աչիկ։[3])

Միեւնոյն իկ[4] մասնիկը կրնայ գտնուած ըլլալ հետեւեալ մթին անուանց մէջ՝ Բաբիկ (սեռ. Բաբիկան) Սիւնի (Բուզ. 250, 253, Փարպ.

---

1 Պարսկերէն -իկ (îk) մասնկաւ կազմուած է անշուշտ Զաֆրանիկ (իշխան Մոկաց, Ստեփ. Ասող. 178, զաֆրան = քրքում բառէն) = նորպրսկ. zaʿfrânî (քրքմագոյն դեղին։)

2 Հմմտ. Վարդան, որ նաեւ Վարդիկան կը կոչուի (Կոր. 14։)

3 "Աչիկ" իբր սեմական անուն գործածուած տես Nöldeke, WZKM, VI, 313.

4 Նաեւ յանուանս Գիւղիկ (Փարպ. 443։)

159, Մ. կաղ. Ա, 211, Ստեփ. Օրպ. Ա, 77 եւն.) Հմմտ. Բաբգէն (Բաբկէն) եւ Բաբոյ (փարպ. եւն։) Բաբ անունը կը յիշէ միայն Խորենացի՝ (Նախաժամանակի մէջ.) Գագիկ Մամիկոնեան (Սեբ. 56) Գաղրիկ Դիմաքսեան (Եղ. 77.) Աբեղեան (փարպ. 126.) Դերանիկ, Դերենիկ (Յովհ. կաթ., Թովմ. Արծր., Ստեփ. Օրպ. Ա. 279) մականուն Գրիգորի, որդւոյ Աշոտայ (տես Թովմ 280 "Գրիգոր, անուանեալն Դերանիկ, որ թարգմանի՝ ուխտիւք խնդրեալ ի տեառնէ։") Կունձիկ աբեղայ (Արիստ. Լաստիվ. տպ. Վենետ. 1844 ԺԱ դարէն, էջ 101.) Հայրիկ ոմն (փարպ. 595.) Նազենիկ [1], հարճ Բակրոյ (Մ. Խոր. 141.) Շուշիկ, դուստր Վարդայ՝ ի սերնդենէ Միհրանայ ի Գարդմանաց (Մ. կաղ. Ա, 288.) Շերանիկ, հայր Աբասայ (Ստեփ. Օրպ. Ա. 261. պարսկերէն կը հնչէ.) Չմշկիկ Դեմեսկիոս, զոր Կոստանդին կայսըը հզօր բանակաւ կարնոյ կողմերը խաւրեց յամի 949 (Ստեփ. Ասող. 166) յունարէն Tzimiskes, բիւզանդական կայսր (969—976.) Ջոջիկ, վրացի իշխան մը (Յովհ. Մամիկ. 57. Ստեփ. Ասող. 180.) Սաբենիկ (սեռ. Սաբենկան) կամ Սարբենիկ. ալան իշխանուհի մը (Մ. Խոր. 126, 128, Թովմ. 52.) Սուրիկ, նահապետ Հրսիձորոյ (Բուզ. 104), նահապետ գաբեղեանց (Վարք Ներսէսի, 52.) Վեհիկ [2] (Մ. կաղ. Ա, 221.)

---

[1] Համեմատելու է պարսկ. nâz (փափկութիւնք), ուստի nâzuk (փափուկ), nâznîn (հաճոյական, փափկացեալ, քնքուշ։)

[2] Յառաջ եկած է պարսկերէն Veh- եւ *Vir- համառօտեալ անուններէն։

Վաչէն որդի Պապայ, որդւոյ Յուսկան (Բուզ. 48, 49.)

2. -ուհի (-ուրհի ձեւէն) մասնկամբ, որ իգական անուններ[1] կը կազմէ։

Խոսրովուհի, քոյր Անակայ, կին Թագաւորին Տիրանայ, մայր Յակոբայ, որուն քոյրն Աոյդնէ (Վարդանայ քով՝ Սոյդէն[2]) կը կոչուէր, (Զենոբ, 22. Վարդան 37.) պարսկ. Խոսրով անուանէ։

Համազասպուհի Մամիկոնեան, քոյր Համազասպենի (ուստի դուստր Համազասպայ), կին Ռշտունւոյ Գարեգնի (Բուզ. 178, 242, 243) Համազասպ անուանէն, որ պարսկերէն կը հնչէ։

Համասփռուհի (°) դուստր իշխանին Բաբգենայ (Ստեփ. Օրպ. Ա, 275։)

Սմբատուհի եւ Սմբատանոյշ, դստերք Սմբատայ (Մ. Խոր. 115.) Սմբատուհի (Թովմ. Արծր. 46) Սմբատ անունէն։

Տաճատուհի, Արծրունեան, կին Մամիկոնենոյ Վահանայ (այսպէս), մայր Սամուէլի (Թովմ. 68.) Տաճատ անունէն (որ անուամբ Արծրունի մը կը յիշեն Եղ. 150 եւ Փարպ. 256։)

Տիգրանուհի, քոյր Տիգրանայ (Մ. Խոր. 50. Թովմ. 38։)

Զարուհի, կին Տիգրանայ (Մ. Խոր. 55, ուստի Նախաժանակէ՞ն։)

---

1 Իգականաց համար կը յօրինուին անուանք -անոյշ եւ -դուխտ (դուստր) բառերով, որոնք պարսկերէնէ առնուած ըլլալով՝ մեր քննութեան չեն վերաբերիր։

2 Համմտ. պահլու. Kâmden (H o r n, Sassan. Siegelst. p. 33) X(u)rden (ZDMG, XLIV, 663.)

Այս կարգին[1] կը վերաբերի՝ մասնկան կողմանէ՝ Թագուհի, կին մը Ուտի աշխարհէն Բագնաց գեղէն (Մ. կաղ. Ա, 196—198։)

Ի վերջոյ յաւաշ բերենք նաեւ քանի մ՚անուններ, որոնք միայն Մ. Խորենացւոյ քով կը գտնուին Հայոց նախապատմական ժամանակին համար, ուստի եւ բաւական երաշխաւորութիւն չկայ թէ արդեամբք իբրեւ անուն կը գործածուէին։ Ասոնք յաճախ -ակ մասնկամբ կը վերջաւորին, որ անշուշտ հոս ալ նուազական կը շինէ։

Հայկ, նախահաւ Հայոց (էջ 12 եւն), Ս. Գրոց մէջ = աստեղատունն Որիոն։ Փառոխ,[2] Ցոլակ (էջ 28), Գառնիկ (էջ 29, գառն), Վառժ (էջ 29), Արբակ[3] (էջ 42), Հառանակ, Վաշտակ (վաշտ), Հայկակ (Հայկ), Ամպակ (ամպ), Գոռակ[4], Գղակ (էջ 43), Պերճ, Արբուն (հմմտ. արբուն), Բաղակ,[5] Հոյ, Յուսակ (յոյս). Կայպակ, Սկայորդի (էջ 44), Պարոյր (շրջանակ), Պաճոյճ (զարդարուն), Կոռնակ (էջ 47), Բաբ (էջ 59) Գիսակ (գէս, հերք) էջ 123 եւն եւն։

Այս անուանքն ալ, եթէ ընդհանրապէս հարազատ են, միեւնոյն տեսակի կը վերաբերին անոնց հետ՝ որոնց վրայ վերը խօսեցանք։

---

1 Որմզդուհի առ Թովմ. (էջ 92) գրուած է փխ. Որմզդուխտ, որ պարսիկ մըն էր, դուստր արքային Որմզդայ Բ (Բուզ. 160, 179. Մ. Խոր. 223։)

2 Հմմտ. Թերեւս պարսկ. farrux, բայց սա բուն ի գործածութեան եղող անուանց մէջ Xorox կը հնչուի։

3 Հմմտ. Ἀρβάκης (Քսենոփոն, Արշաւ. Ա, 7, 12) սանսկր. arbhaka (փոքրիկ։)

4 Գոռ — Մարզպետունի մը կը յիշէ Ջամչեան (Բ, 837։

5 Պարսկերէնէ փոխառեալ բառ մըն է։

Ըստ այսմ մեր հետազօտութենէն իբրեւ եզրակացութիւն յառաջ կու գայ հետեւեալը։

Թէեւ պահած էր հայերէնն ալ յատուկ անուանք բարդելու յատկութիւնն այն չափով, զոր ունէին օրինակի համար հին երաներէնն կամ յունարէնն կամ գերմաներէնն. Թէեւ Հայոց աշխարհի աշխարհագրական անուանց մէջ կը գտնուին բազմաթիւ հին բարդութիւնք, սակայն բուն մարդկան յատուկ անուանց մէջ եւ ոչ հատ մ՚ապահով օրինակ կը գտնենք, որ ըստ հնդեւրոպական եղանակի բարդուած լիանուն մ՚ըլլայ (ինչպէս յուն. Ἵππ-αρχος, գերմ. Wolfgang, զենդ. Karesâspa = սանսկր. Krçâçva “վտիտձի„։) Ուստի եւ ոչ հաւանական է թէ այն սակաւաթիւ պարզ անուանքն, ցորչափ բնիկ հայերէն են, փաղաքշական անուանք ըլլան լիանուններէն կրճատուած (ինչպէս յուն. Ἵππος, Ἱππίας, գերմ. Wolf, սանսկր. Krça.) այլ անշուշտ ի սկզբանէ հետէ պարզ մականուանք կամ յորջորջմունք եղած են, ինչպիսի են յունարէն Κάπρος (= վարազ), Ἰκτῖνος (ուրուր), Ἀτταγᾶς (սալամբ), Δόναξ, (եղեգն), Σαρδόνυξ, Ἀστήρ եւն եւն (տես Fick, Griech. Personennamen, p. VI.) Ասոր ապացոյց է այս կարգի անուանց մեծագոյն մասին նշանակութիւնը. (հմմտ. Արտոյտ, Եզնիկ, Խոճկորուկ, Մրջեմնիկ եւն,) եւ նաեւ այն պարագան, որ ասոնց ոմանք ապահովապէս՝ եւ այլք հաւանականաբար՝ մականուն են միայն յիշատակեալ կամ անյիշատակ թո-

ղուած բուն յատուկ անուանց։[1] Սակայն ի հարկէ պէտք ենք տեղի տալ այն մասին թէ պարզ (միարմատեան) բնիկ հայ անուանց մէջ նախնական փաղաքշական անուանց մնացորդներ կրնան գտնուիլ։ Սակայն ընդհանուրն առեալ՝ յատուկ անուանք կազմելու հնդեւրոպական կերպը չէ պահուած հայերէնին մէջ, այլ կորսուած է, ինչպէս լատիներէնին եւ լիթուերէնին մէջ։ Հին լիանուանք եւ փաղաքշականք տեղի տուին օտար — նախ պարսկական, յետոյ քրիստոնէական — անուանց, որոնցմէ կազմուեցան սակաւաթիւ նոր անուանք հայկական մասնիկներով։ Այս սակաւաթիւ բնիկ հայ անուանք որ կը գտնուին, են՝ կամ գոնէ ի սկզբան անդ էին՝ լոկ մականուն կամ յորջորջանք։

Այս նախադասութեանց դէմ կարելի չէ յառաջ բերել այն պարագան թէ աշխարհաբար հայերէնը կրկին ստացեր է լիանուն կազմելու յատկութիւնը, ինչպէս Աստուածատուր (որդի Աղբայրկան ըստ Brossetի = Աղբրիկ՝, Կիրակոս, 91) Խաչատուր (Կիր․ 106, 108) եւն եւն։ Աստուածատուր գրաբարի մէջ պարզ կոչական[2] մըն է՝ "տուեալ յաստուծոյ„ նշանակութեամբ, եւ միայն ուշ ժամանակաւ իբրեւ յատուկ ա-

1 Հմմտ. վերը՝ Այծեամն, Իշխանիկ, Դերանիկ։ Հին հեղինակք զանազանութիւն չէին ընէր անուանց եւ յորջորջմանց մէջ, ինչպէս յետոյ օրինակի համար Վարդան գրելով (էջ 140). "Մխիթար, մականուն՝ Գօշ Գանձակեցի„ (այսինքն՝ ցանցառ մօրուօք։)

2 Նոյնը կ'արժէ Վանատուր դից անուան նկատմամբ (Ագաթ. 623) որ պարզապէս "հիւրընկալ, ասպնջական„ կը նշանակէ = ξένιος, ξενοδόχος.

նուն յերեւան կ'ելլէ (ըստ Θεόδοτος, Θεόδωρος անուանց։) Քրիստոնէութեան ձեռօք մուծուած այս անուանք,[1] ըլլան մի կամ երկու արմատով, կապ չունին հին հայերէնի անուանց հետ, ուստի հոս ասոնց վրայ չենք խօսիր։ Այլոց կը թողում խօսիլ Նոր լեզուի մնացեալ անուանց[2] վրայ։

---

1 Հմմտ. Մխիթար (մխիթարութիւն, մխիթարիչ.) Մկրտիչ. Կարապետ (պարսկերէնէ. յառաջընթաց, այսինքն Յովհաննէս Մկրտիչ.) Տիրան-Թադէ (Վարդան, 73) մարտիրոս մը։

2 Օրինակի համար՝ Ջախջախ. Չամչեան (չափիլ բառէն) եւն։



